# ԳՈՐԾ ԿԱՅ ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ

## ՏԵՍՈՒԹԻՒՆՔ

Հ. ԳԵՂԱՄՈՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՊՕՅՆՈՒՆՔԵՐԵԱՆ

ՅԱՆՏՕՆԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ



Կ. ՊՕԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՐԱՄԵԱՆ

1879

# ԳՈՐԾ ԿԱՅ, ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ

## ՏԵՍՈՒԹԻՒՆՔ



Հ. ՊՕՂՈՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՊՕՅՆՈՒԷՅՐԻԵԱՆ

ՅԱՆՏՈՆԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՐԱՄԵԱՆ

1879

## *Հայազգի բնակիչք Կ.Պոլսոյ*

Ձեզ առանձինն կ'ուղղեմ խօսքս, վասն զի ձեր մէջ շարունակ գտնուելովս եւ քաղքիս դրից եւ վիճակին վերայ ունեցած տեղեկութեամբս՝ գիտեմ որ ամենքդ ալ գլխաւոր նպատակի մի դրած էք ձեր անկախութիւնը: Ծանօթ է ինձ թէ ի՛նչ բանի կ'ըսպասէք, եւ թէ ի՛նչ է ձեր փնտռածը : Կարճ խօսելով ամենքդ ալ դրամ վաստկիլ կ'ուզէք եւ *Գործ* կը խնդրէք : Ասոր համար կ'ուզեմ բանալ ձեր առջին զանձուց դռունքը եւ ցուցանել ձեր սպառած անբաւ ոսկիները, զորոնք կարող էք ձեռք բերել եւ ստանալ, միայն թէ կամենայք: Մինչ դուք փոխանակ վաստկելոյ եւ իրերաց վաստկցնելոյ կը թողուք որ օտար ազգաց ձեռք անցնին, եւ միշտ կը զանգատիք՝ թէ հար հարակ չունիք, *Դրամ* չունիք, *Գործ* չունիք: Ձեր հարստանալոյն եւ հանգիստ ապրելոյն համար բաւական է միայն քիչ մի

փոյթ, փոքր մի ջանք, սակաւ մի աշխատանք. որովհետեւ ո՛չ *Գործ* կը պակսի եւ ո՛չ ալ *Դրամ*:

Եթէ դժուարահաւատալի երեւայ ըսածս, վայրիկ մի համբերեցէք, եւ տուած բացատրութիւնս մտադրութեամբ կարդալէն վերջը՝ անշուշտ ինձ իրաւունք պիտի տայք, թէ Մայրաքաղաքիս մէջ շատ ԳՈՐԾ ԿԱՅ, բայց ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ:

Անհնար կ՚ըլլայ ինձ հանդարտ գլխով և խաղաղ սրտիւ Քաղ.քիս մէջ պտըտիլ։ Ամեն կողմանէ խեղճութեան տխուր կերպարանք հետզհետէ դիմացս կ՚ելնեն։ Թող ազգատեաց և մուրացկանաց բազմութիւնն, շատ մի ծանօթ անձինք ալ չորս կողմս կը խռնին, ոմանք ողորմութիւն կը խնդրեն՝ յայտնելով իրենց վերջին աղքատութիւնը և զաւակաց անօթութիւնը, ոմանք շահաւոր գործ կը փնտռեն, ուրիշներն ալ ծանօթ էֆէնտիից ձեռօք պաշտաման մի հանիլ կը հայցեն։ Կան որ ալ ամսականաւ վաճառականի կամ սեղանաւորի քով ծառայութեան մտնել կը խնդրեն։ Վերջապէս շատ մի անգործ բազմութիւն ստանդական շրջելով իրենց օրական ապրուստն ճարել կ՚աշխատին։

Ասոնց մէջ տասն կամ քսան տարի յառաջ իմ ծանօթներէս ոմանք բաւական ապրուստի տէր ընտանիք էին, տուն և եկամուտ ունէին, սպասաւորս և աղախինս կը ծառայեցնէին, կարօտելոց յօգնութիւն կը հանէին. քանի՜ քանի՜ գերդաստանք անբաւ հարստութիւն դիզած էին, որչափ արհեստաւորք տան և եկամտից տէր էին, կանայք անդամ և աղջկունք իրենց ճարտար ասղնեգործ բանուածով բաւական ապրուստ ճարեր էին իրենց տպագայ կենաց հանգիստ պահպանութեան համար։

Իսկ հիմա ո՞ւր մնացին Ազգիս այնչափ հարստութիւնքն։ Աւա՜ղ, այն հարստութեան, ճոխութեան և պերճութեան հեղեղքն յանկարծ ամպրան անձրեւաց պէս ողողեցին, և Ազգայինք կարծեցին՝ թէ Երկինք

հանապազ զիրենք այսպէս պիտի խնամէ. ուստի բոլո-
րովին անհոգ և հանգիստ իրենց միաստակար ճանապար-
հին մէջ շարունակեցին։ Ահա այսօր ողորմելիքն վերջին
չքաւորութեան մատնուած, գրեթէ ամենքն ալ յերաշտէ
աղքատութեան կը տառապին, և մուրացկանութեամբ
իրենց դժբաղդութեանց դեղ և դարման կը խնդրեն ։

Ողորմելի՜ տեսարան Հայազգի բնակչաց Մայրաքաղա-
քիս, որ մարդոյս միտքն կը շուարեցնէ, և սիրտն կը ճմլէ։

Իւրաքանչիւր Հայազգի թո՛ղ անգամ մի իւր ընտանե-
եաց և ազգականաց վերայ աչք մի նետէ, և ինքնին
կը տեսնէ՝ թէ իմ այս գրուածս ճշմարիտ է ։

Գլխաւորաբար երկու բան կայ մտադրութեան ար-
ժանի։ Առաջին՝ թէ մեր Հայոց Ազգն միշտ յաջողակ
գտնուեցաւ դրամ վաստկելոյ և հարստութիւն դի-
զելոյ. բայց նոյն հարստութեան պահպանութեան բո-
լորովին անյաջող գտաւ։ Այո՛ վաստկիլը սովրեցաւ,
բայց վաստկածը գործածելոյն եղանակն ամենևին
չգիտցաւ։ Երկրորդ՝ թէ անգործունէութիւնն, անհո-
գութիւնն և դանդաղութիւնն Ազգիս մէջ շատ տարած-
ուած են։ Ահա այս երկու կէտեր Ազգիս աղքատու-
թեան և յետին չքաւորութեան պատճառ եղեն ։

Շատ հեռի չերթանք, քան կամ երեսուն տարի
առաջ Հայոց Ազգիս համար ապաքէն ոսկեդար մի կրնար
սեպուիլ երբոր Օգոստափառ Սուլթան Ապտ իւլ Մէճիտ
կայսրն իւր առանձին հրովարտակով Հայազգի սեղա-
նաւորաց յանձնեց բովանդակ Օսմանեան պետութեան
ելևմտից գանձը։ Ասկէ աւելի ի՞նչ մեծ բաղդ կրնար
մարդ մի երևակայել ։ Բայց հազար եղո՜ւկ, որ
ազգային սեղանաւորքն կարող չեղեն զանիկայ ընդեր-
կար վայելել ։ Նախանձ, ատելութիւն և անմիաբանու-
թիւն պատճառ եղեն քակելոյ և ոչնչանալոյ այն
երկուց անուանի և հզօր [illegible] և [illegible] Ընկերու-

թեանց, որով ընդհանուր Ազգիս կործանումն ալ շուտով հասաւ ։

Այն ժամանակի ծաղկած և անուանի Հայազգի մեծանուն և մեծահարուստ սեղանաւորքն այսօր ո՞ւր են։ Ո՞ւր են Ճանիկեանք, Թընկըրեանք, Ճէզայիրլեանք, Բիշմիշեանք, Հիթաէթեանք, Մըսըրլեանք, Միսաքեանք, Գըլճեանք, Կէլկէլեանք և այլ շատ մի բազմութիւն մեծամեծ հարուստ Ամիրայից մերոց ։ Ասոնք արդարև Ազգիս Հայոց փառք և պարծանք էին ։ Աղբիւրք էին ուսկից շատ արհեստաւորք իրենց չքաւորութեան ծարաւը կ'անցունէին ։ Ճեմարանք էին ուսկից քաղցեալ և սովեալ բազմութիւն արանց և կանանց զօրհանապազ կը կերակրուէին։ Ասոնց ձեռնտուութեամբ շատ մի ազգայինք տանց և կալուածոց տէր եղած էին, և շատ մի ալ հասարակաց շինուածք կանգնուած ։ Այն ժամանակ այսչափ հզօր և հարուստ մեծատունք կային, իսկ հիմա ո՞ւր մնացին այնչափ անուանի Ամիրայք, ո՞ւր են իրենց դիզած անբաւ հարստութիւնքն։ Աւա՜ղ, նոյն իսկ իրենց կենդանութեան ժամանակ փճացան, և կամ իրենց որդւոց ժամանակ, որոնք այսօր թերևս աղքատութեամբ կ'ապրին, և անոնց ալ յիշատակն և անուանն անգամ չյիշուիր։ Հազար և բիւր վա՜յ մեծատանց Ազգիս, որք հեռատես քաղաքագիտութիւն չունենալնոյն համար յայս ողորմելի վիճակ եկին և հասին, վասն զի իրենց հարստութիւնը պահպանելոյն արհեստն ու գիտութիւնն ամենևին չգիտցան ։

Ազգն Յունաց կանխատես և հեռատես քաղաքագիտութեամբն գիտցաւ իրեն դիրքն հաստատ պահել, և իւր ինչքը, ստացուածքը և հարստութիւնը ի վերահաս վտանգաց ապահովել ։ Յունազգի վաճառականք և սեղանաւորք Մայրաքաղաքիս մէջ քանի մի ժողովատեղիս (club) բացին, ձմերան երկայն գիշերներն հոն

ժողովեան, խօսեցան և խորհեցան, և ինչ որ իրենց օգտակար երևեցաւ, զայն միութեամբ ի գործ դրին, և ինչ որ հեռատեսութեամբ վնասակար տեսին՝ անկէց հեռացան ու զգուշացան։ Եւ այս ճանապարհաւ և իրենց աշխուժութեամբ, աշալրջութեամբ և գործունէութեամբ Մայրաքաղաքիս մէջ վաճառականութիւնն և մէջ եւրոպական ոճով սեղանաւորութիւնը ձեռք բերին և հարստացան։

Առանց հակառակ մեր Ազգին հարուստ սեղանաւորքն իրենց առջի բռնած դիրքն ամենևին չփոխեցին, և ոչ ալ Պետութեան և ժողովրդեան ընթացքին փոփոխուելոյն միտ դրին, այլ շարունակեցին իրենց առջի վտանգաւոր ճանապարհին մէջ, և հեռատես քաղաքագիտութիւն չունենալնուն համար իրենց վաղահաս կործանումն ալ չկրցան գուշակել։

Երբոր շահախնդիր Եւրոպացիք նախանձեալ ընդ փառս Սեղանաւորաց մերոց այլ և այլ ճանապարհաւ՝ չարախօսութեամբ և զրպարտութեամբ՝ զանոնք Ելևմուտ պաշտօնարանէն հեռացուցին, և ինքեանք գանձուն օգուտն ամենևին չմոռնալով, օգնականութեամբ պաշտօնէից ոմանց, իրենց անձնական շահն միայն դիտեցին. երբոր Սեղանաւորքն մեր գանձուն վնասուիլն ու տկարանալը չկրցան ըստ կարի թափանցել. երբոր Ելևմուտ պաշտօնեայքն ստիպեցին և սաստկապէս պահանջեցին իրենցմէ առ գանձն ունեցած պարտքերնին. երբոր Սեղանաւորքն ալ հարուստ Փաշաներէն իրենց մեծագումար պահանջից համար (որ թերևս քառապատիկ առաւել էին քան թէ իրենց առ գանձն ունեցած պարտքն), ըրած բողոքնին ի զուր և անլսելի ըլլալով՝ պարտաւորեցան մեծամեծ վնասուք տուժել, և կամ յարքունիս գրաւեցան ինչք նոցա. այս ամեն արկածներէն՝ կըսեմ, մեր հարուստ Ամիրայքն կարող չեղեն ամենևին սթա-

փիլ. և արժանաւ որ գոնէ իրենց մնացած հարստութիւնն ապահովէին ։ Այլ ընդհակառակն ոմանք կառավարութեան պաշտօնատարաց այլ ընդ այլոյ բանից և խոստմանց հաւատք ընծայելով լաբիւրինթոսի մէջ մնացին իրենց մեծամեծ վնասիւք ։ Այլք բաղդախնդիրք իրենց առջի հարստութիւնը դարձեալ ձեռք ձգելոյ յուսով ինչչափ որ մնացած տուն, եկամուտք, ինչք, ոսկի և արծաթ ունէին՝ վերջին անմտութեամբ արժէթղթոց փոխեցին, և այս չբաւելով՝ արժէթղթոց խաղարկութեան ինքզինքնին մատնեցին, եւ բոլոր ունեցածնին յանձնեցին Գոռօշէօֆ խանին և սնանկացան . փոխանակ զի պէտք էր որ աշխատէին՝ գոնէ իրենց մնացած հարստութիւնը չկորուսանել, և ոչ թէ բաղդի փոփոխութեանց ներքև ձգել ։ Եղեն մեծատունք ալ, որք տնտեսական գիտութեան անտեղեակ, անական բարեկարգութեան անգէտ, և առաւել որդւոց կրթութեան և բարւոք դաստիարակութեան բոլորովին անհոգ ըլլալով, թոյլ տուին, որ իրենց որդիքն ալ միևնոյն իրենց նման մեծնան ։ Եւ ասանք երբ չափահաս եղեն, իրենց անսանձ հաճոյից եւ անկիրթ կրից հետևեցան . ինքզինքնին զեղխութեան և շռայլութեան տուին, և շուտով աղքատացան . մերկ կողոպուտ յամեն հայրենի հարստութեանց, զոր այնչափ հոգօք, աշխատանօք եւ արեան քրտամբ ժողոված էին ծնողք իւրեանց ։ Թէ որ մեր ազգային մեծատունքն միասեղ ժողովէին, եւ խորհրդակցէին, միմեանց օգնէին, և հեռատես քաղաքագիտութիւն ունենային, այսպէս քիչ ժամանակի մէջ չէին արդեօք փճացներ իրենց այնչափ հարստութիւնը ։

Եւ առաւել ողբալին այն եղև, որ հասարակ միջին ժողովուրդն ալ վերոյիշեալ մեծատանց օրինակին հետևեցան ։ Քանի՞ քանի՞ ընտանիք արդեօք աղքատացան. ոմանք իրենց տուներուն դադարելոյն պատճառաւ ու-

րիշ շահաւոր գործ մի գործելոյ տեղ, նախ՝ պատրաստ դրամներն կերան լմնցուցին. եւ յետոյ՝ իրենց մնացած ինչք, տուն, խանութ, զարդ եայլն, բաղդին հետեւելով՝ արժէթղթոյ խաղարկութեան մէջ կորուսին և թշուառ վիճակի մէջ ինկան: Քանի մի բաղդաւորք բազմաթիւ փժբաղդից ինկման եւ կործանման պատճառ եղեն: Անոնց հետեւեցան ուրիշ այրի կանայք և աղջկունք, որք անգործ և անաշխատ հանգիստ ապրելու մտօք, իրենց դրամը, զարդը, անդամանդը եւ հաստատուն կալուածներն ալ վաճառեցին, Օսմանեան արժէթուղթս գնեցին, ու երբ ասոնք ինկեր եւ անպտուղ եղեն, իրենք ալ աղքատացան եւ յետին չքաւորութեան մէջ ինկան: Երիտասարդքն արհեստի և վաստակի ամենեւին ձեռք չզարնելով դատարկաշրջութեան վարժուեցան, ցորեկն սրճանոցէ ի սրճանոց, և ի գիշերի թատրոն, պարահանդէս, և այլ ուրիշ հալեցնող և մաշեցնող անարգզուարճատեղերէն չզատուեցան, և այսպէս իրենց հայրենի ժառանգութիւնն եւ ընտանեաց հարստութիւնը կերան ու մսխեցին: Կանայք և աղջկունք ամենեւին ձեռագործի մի չզբաղելով անգործ եւ դատարկ կեանք անցնելոյ վարժուեցան, և իրենց վիճակին համեմատ վայելուչ և օգտակար զարդն ու զգեստն ի բաց թողլով, իրենց կարողութենէն շատ վեր ծանր զգեստուց և զարդարանաց, պաճուճանաց և պճնանաց հետեւեցան, որով անտանելի պարտուց ներքև ինկան և փճացան:

Ազգին որ խեղճութիւնը մի առ մի պատմեմ. ահա՛ ամեն մարդ կը տեսնէ, ամեն մարդ ասոր վերայ կը խօսի, և ամեն մարդ կը ցաւի: Բայց չկայ մարդ մի՝ որ այդ [illegible] քննէ, չկայ անձ մի որ կարեւոր դարմանը հոգայ, և այս չարաչար ընթացից առաջն առնու. ճար և ճարակ գտնէ այս համայնաջինջ քաղցկեղ ախտին, որ Մայրաքաղաքիս չորս կողմն տարածուած, բայց

Ազգին վերայ չատոնց ի վեր առաւել եւս ծանրացած է. Այս է վերջին եւ անտանելի աղքատութիւնն ։

Բայց ինչ որ եղեւ, ամենն ալ անցաւ դնաց. ալ դառնալիք չունի. իմաստութիւնն հոն է, որ անցածներէն օրինակ առնելով ապագային մէջ զգուշանամք, և անկէց օգուտ քաղեմք։ Իսկ թէ ի՞նչ է արդեօք այս ողորմելի թշուառութեան բուն իսկական պատճառն. ըստ իս՝ որչափ ալ քաղաքական պատճառք կան, ի վերայ այսր ամենայնի ընդհանրապէս մեր ազգին ուսումնական, տնտեսական և ելեւմտական գիտութեանց անդէտ ըլլալն է. որ ազգի մի միակ հոգի և կենդանութիւն տուող գիտութիւնք են ։

Ազգային իշխանութեանց անհրաժեշտ և առաջին պարտքն է՝ Ազգին բարոյական և նիւթական ոյժը և կենդանութիւնը պահպանել։ Թէ որ ազգ մի աղքատանայ՝ թէ նիւթական և թէ բարոյական զօրութիւնն և կենդանութիւնն ալ իսկոյն կը կորուսանէ ։ Պէտք է խոստովանիմք՝ թէ մեր Ազգն ալ վերջին աղքատութեան հասած է, վասն զի ընդհանրապէս աղքատացան մեծատունք, սեղանաւորք և վաճառականք, աղքատացան արհեստաւորք և բովանդակ ժողովուրդն, չատցաւ անգործ և դատարկ մարդկան թիւն։ Արտասուալից աչօք պիտի յայտնեմ ճշմարտութիւն մի՝ թէ աւելի քան, երեսուն տարի առաջ Ազգին Հայոց ստացած հարստութեանց այսօր և ոչ քառորդ մասն անգամ մնաց ի մեր քովը։ Ըսէք եղո՛ւկ մեզ, և ի՞նչ պիտի ըլլայ արդեօք այս ողորմելի Ազգին վերջն ։

Այժմեան Պետութեան գանձուն նեղութիւնք յայտնի է, Ազգին աղքատութիւնն ալ յայտնի է, անգործ և դատարկ անձանց թիւն ալ յայտնի է. Ի՞նչ միջոց կայ արդեօք, որով զմեզ կարենամք փրկել յաղքատութենէն, և անգործ և դատարկ մարդկան ալ գործ գտնել։

Նախ և առաջ՝ սիրեցեալ Քաղաքակիցք իմ, դի՛ք ի լսելիս ձեր այս անյեղլի ճշմարտութիւնս. թէ «Մի՛ յուսայք յիշխանս, և մի՛ յորդիս մարդկան, զի ոչ գոյ փրկութիւն ի նոսա։» Օտար ազգաց վերայ մեր յոյսն ամենևին չդնեմք, անոնցմէ մեզի փրկութիւն չկայ։ Անոնք մի միայն իրենց շահն և օգուտը կը դիտեն։ Թերևս շատ անգամ մեր վնասուք հանդերձ։ Ուստի մեք զմեզ փրկելոյ աշխատիմք, ընդ հովանաւորութեամբ Օսմանեան պետութեան։ Ջանամք որ զմեզ յանտանելի աղքատութենէս ազատեմք։ Ասոր համար ինչ ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ միջոցք կան, զանոնք շուտով ի գործ դնեմք։ Այս ըլլայ մեր մի միայն գլխաւոր մտածութիւնն և նպատակն։

Ժողովրդեան բերնոյն մէջ սովորական խօսք մի եղած է, թէ Կ. Պոլսոյ մէջ ա՛լ բան և գործ չմնաց։ Սուտ է բոլորովին այս խօսքը։ ԳՈՐԾ ԿԱՅ բայց ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ։ Եթէ ըսածիս չէք հաւատար՝ ելէ՛ք անգամ մի Մայրաքաղաքիս չորս կողմն պտըտեցէք, ու տեսէք թէ քանի՛ քանի՛ հազարաւոր և բիւրաւոր մարդիկ շարունակ ամեն օր առևտուրոց մէջ են. բիւրք բիւրուց կրպակք կերպ կերպ ապրանքով լցուած, ազգ և ազինք շարունակ կ'երթևեկեն և վաճառականութեան զբաղած են. միլիոնաւոր ոսկիներ անդադար շրջան և պտոյտ կ'առնուն Մայրաքաղաքիս մէջ. բայց նայեցէ՛ք, քննեցէ՛ք և փնտռեցէ՛ք՝ թէ այս բիւրաւոր գործողաց մէջ ո՞րչափ Հայազգի կրնաք գտնել։ Ցաւալի տեսարան. ԳՈՐԾ ԿԱՅ, ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ։

Սիրեցեալ Ազգայինք, ալ դանդաղութեան, ծուլութեան, անգործութեան, և յուսահատական թմրութեան ժամանակը շատոնց ի վեր անցաւ գնաց. դատարկ և ընդունայն շատախօսութիւնք դարման չեն։ Արթննալոյ և գործելոյ ժամ ու ժամանակ է։ Ինչպէս որ առաջ

*խոստանայ՝ կամիմ մի առ մի ձեր աչաց առջին շարել ձեր հաւաքուած միլիոնաւոր ոսկիները, ցուցանել դան-ձուց դրունքն, և հաստատել առջի բանս՝ թէ Մայրա-քաղաքիս մէջ շատ* ԳՈՐԾ ԿԱՅ, *բայց Հայազգի* ԳՈՐԾՕՂ ՇԱՏ ՔԻՉ ։

*Խօսից հաստատութեան հիմն կ'առնում ստորական հաշիւն, որով Մայրաքաղաքիս մէջ Հայազգի բնակիչք, բնիկք և գաւառացիք, երկու հարիւր հազար հոգիէն աւելի կը հաշուին ։ Ասոնց կերուխումին, զգեստուց, կահուց և կարասեաց, բնակութեան և այլոց պիտոյից վրայ հաշիւ մի ընելով ես ինքնին վեր ի վերոյ գտնալ ուզեցի՝ թէ օրըստօրէ տարւոյն մէջ ազգայնոց քսա-կէն որչափ ոսկի կ'սպառի։ Ստոյգն ըսեմ՝ առաջին թեթև բան մի կ'երևայր. բայց երբոր քանի մի գլխոց վրայ հաշիւ ըրի, ելած արտադրելոյն վրայ խիստ զար-մացայ։ Եւ այսպէս հետաքրքրութեամբ երբոր հետզհե-տէ այլ և այլ նիւթոց վրայ նոյնօրինակ հաշիւս շարու-նակեցի, տեսի որ տարւոյն մէջ Ազգիս քսակէն լռիկ մնջիկ և անզգալի եղանակաւ միլիոնաւոր ոսկիներ որըն-թաց գետի պէս շարունակ կը վազեն կ'երթան։ Եւ աւա-ղել ցաւալին այն է, որ այնչափ բիւրաւոր ոսկիներէն և ոչ փոքրիկ մաս մի մեր ազգայնոց քսակին կը վերա-դառնայ։ Այս հաշւով յայտնի տեսի, և գրեթէ ձեռամբ շօշափեցի մեր տարեկան ելևմտից մէջ անհամեմատ տարբերութիւն մի։ Քանի որ տարւոյ մի մէջ Ազգիս քսա-կէն անզգալի կերպիւ տասն միլիոնի մօտ ոսկի լիրա շարունակ կ'սպառի, (ինչպէս որ ստորև առանձին ա-ռանձին գլխով պիտի տեսնեմք) , եւ մուտքն ալ ելից բնաւ չհամապատասխաներ . ի՞նչպէս Ազգս չաղքատա-նայ, և ի՞նչպէս մուրացկանութեան չպարտաւորուի։*

*Մեք ոչ պետութիւն ունիմք , ոչ իշխանութիւն , ոչ արուեստից գործարան , և ոչ ալ ոսկւոյ եւ արծաթոյ*

գանձեր, որով կարող ըլլամք այնչափ անգործ և դատարկ մարդիկն կերակրել։ Բայց ունիմք Օսմանեան Պետութենէն շնորհուած այլ և այլ առանձնաշնորհմունք, այսինքն՝ Պատրիարքական իշխանութիւն, Սահմանադրութիւն, Ազգային Ընդհանուր ժողով, Վարչութիւն են. Ունիմք բարձրաստիճան Եկեղեցականս, կարող Իշխանաւորս, քաղաքագէտ Անձինս և պետութեան Պաշտօնեայս։ Ասոնք ամենքն ալ պատասխանատու են Ազգիս յառաջադիմութեան, որք կամօքին յանձն առած են Ազգը խնամել ու դարմանել և Ազգիս բոլոր նիւթական և բարոյական յառաջադիմութեանը հոգ տանել։ Ուստի այս ամեն Պաշտօնատարաց աննահանջելի, անհրաժեշտ և անխուսափելի պարտքն է ջանալ որ ինչչափ կարելի է Ազգիս տարեկան ելոյթից և բովանդակ ծախուց համար վատնած այնչափ միլիոնաւոր ոսկիներէն գէթ մաս մի իրեն վերադառնայ և Ազգիս մէջ պտոյտ և շրջան առնլով շատ մի անգործ մարդիկ գործ գտնեն, և շատ մի ալ աղքատ և խեղճ ընտանիք կարող ըլլան ապրիլ և Ազգին բեռ չըլլալ։

Այս է իմ բուն փափաքանս և իմ միակ դիտմունքս, երբ առաջիկայ գրութիւնս սիրեցեալ Ազգիս կը ներկայացնեմ, և ալեւորեալ հասակիս մէջ կամիմ իբր կտակ թողուլ իրեն՝ սրտիս մէջ երկար ատենէ ի վեր ունեցած զգածմունքս։ Երկրագործութեան յառաջադիմութեան համար ուրիշ տետրակով քանի մի խորհրդածութիւններ ըրի և միջոցներ առաջարկեցի, այսօր ուրախութեամբ կը տեսնեմ որ զօրաւոր ձեռք նորին կատարման համար կ'աշխատին, բարւոքելով և կատարելագործելով եւս, ինչ որ ես թերեւս տկար կերպով բացատրել աշխատեցայ։

Ահա այսօր անոր նման ուրիշ գրութեամբ մ'ալ բոլոր Մայրաքաղաքիս Հայազգի բնակչաց անտանելի աղքա-

տութեան տեղ և դարման մը ճարելոյ մտօք ջանացի ցուցանել թէ Ազգայինք ի՛նչ բանի մէջ կը գթեն ու կ՚իյնան, և թէ իրենց պակասութիւնքն որո՛նք են ։ Եւ ի վերջ տարւոյս Ազգիս յառաջադիմութեան և հարըստանալոյն, և արուեստից ծաղկելոյն համար ըստ իս ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ այլ և այլ միջոցներ պիտի առաջարկեմ ։ Բարեբաղդ պիտի համարիմ ինքզինքս, երբ այս Նիւթոյս վերայ ալ կարող ըլլամ Ազգայնոց ուշադրութիւնն հրաւիրել ։

# ԳՈՐԾ ԿԱՅ, ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ

*Այդ խօսքերնուս ճշմարտութիւնը ապացուցանելու ամենէն դիւրին և ամենէն պարզ ճամբան գործածեմք, չըլլայ թէ խորին զննութեամբ խօսքերնիս դժուարիմաց ըլլայ ։*

*Այդ նպատակին համար ալ պէտք է առանձին առանձին մէջտեղ բերեմք մեր կենաց զանազան պէտքերը․ որով և յիշեմք ասոնց զանազան արհեստները, որոնք նոյն պէտքերը լցուցանելու համար հաստատուած են ։*

*Այդ արհեստները ահաւասիկ* ԳՈՐԾ *են, այն գործոց ալ մեծութիւնը, պիտանութիւնը և ծանրակշռութիւնը իմացնելու համար պիտի քննեմք՝ թէ ինչ ընդարձակութիւն ունին պէտքերը և ինչչափ գումար կը ծախուի նոյները հայթհայթելու ։*

« ԳՈՐԾ ԿԱՅ » *ըսալը այսպէս նիւթական կերպով ցուցանելէն ետքը պէտք է տեսնամք՝ թէ ինչչափ Հայազգիք այդ զանազան արուեստներուն զբաղած են ։ Մեր արդարասիրութիւնը կը պարտաւորէ զմեզ, որ յայտնեմք ճշմարտութիւնը երբ մեր Ազգայինք արհեստի մի մէջ յառաջացեալ և բազմաւոր են ։ Բայց դժբաղդաբար մեք կը տեսնեմք, և ընթերցողք ալ յայտնի պիտի տեսնեն, թէ մեր Ազգայինք շատ քիչ*

արհեստաւոր են, ուրով և կ՚ըստուգուի միւս խնդրին ալ՝ թէ «ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ»։

Թէպէտև մեր առաջիկայ քննութիւնը քիչ մը ձանձրալի երևնայ ոմանց, բայց կը խնդրեմք որ Ազգայինք մտադրութեամբ կարդան. իրաւ յայտնի բաներ են գրուցուածները, բայց ո՛չ այնքան ամենէն յայտնի բաներն ամենէն քիչ մեր մտածմանց նիւթ և առարկայ կ՚ըլլան։

Բայց առաջուց այս ալ պէտք է՝ որ գիտնան մեր ընթերցողները, ինչպէս որ վերը գրուցեցինք, թէ Մայրաքաղաքիս Հայազգի բնակչաց թիւը սովորական հաշուով 250,000 ենթադրած եմք, յորոց 50,000 գաւառացի պանդուխտք և 200,000 բնիկ Պօլսեցիք են, որք որչափ ալ 40,000 ընտանիք կը կազմեն՝ իւրաքանչիւր ընտանիքը 5 հոգի հաշուելով, բայց մեք 30,000 ընտանիք միայն հաշուեցինք։ Իսկ 10,000 ընտանիքը իբր յետին աստիճանի կարօտ բոլորովին ի բաց թողուցինք, և այսպէս յետագայ գլխակարգութեանց մէջ ի հարկին ծախուց գումարը 30,000 ընտանեաց վերայ բաժանելով կամ բազմապատկելով նշանակեցինք։ Նմանապէս բոլոր ծախքերը մէկ տարւոյ միջոցին վերածեցինք, և ըստ այսմ մեր տեղեկութիւնք կը պարունակեն տարւոյն մէջ Կ. Պօլսոյ Հայոց առհասարակ իրենց Անձնական և Ընտանեկան պիտոյից, Ուտելեաց, Ագանելեաց, Կարասեաց և Այլևայլ ծախուց համար վճարած գումարոյն հաւանական հաշիւը։

Սկսիմք ուրեմն առաջ այն պիտոյքներէն, որք աւելի սովորական են։

## 1.

# ՀԱՑ

Մայրաքաղաքիս երկու հարիւր յիսուն հազար Հայազգի բնակիչք՝ ամեն օր առնուազն հարիւր յիսուն հազար քաշ (օքքա) հացի պէտս ունին ։ Քաշ մի հացին գինը երկու արծաթի դահեկան հաշուելով՝ իւրաքանչիւր ամիս յիննսուն հազար ոսկի կընէ. իսկ տարւոյն մէջ 1,080;000 ոսկի, զորս Ազգս ամեն տարի կը վճարէ միայն իր կերած հացին համար ։ Թէ որ այսչափ հացին պէտք եղած ցորենոյն վաճառականութիւնը, եւ հաց շինելոյն արհեստը ազգայնոց ձեռօք կատարուէին, ի՜նչ մեծ առուտուր և ի՜նչ մեծ շահ չէն բացուէր ։ Առաջ Սեւ ծովուն ծովեզերեայ քաղաքաց մէջ բնակող Ազգային վաճառականք ցորենոյն շահէն իրենց բաժինը կ'առնուն ։ Ազգային ջաղացպանք և իրենց գործաւորքն ալ կ'աշխատին և կ'ապրին ։ Երբ ամեն թաղ Հայազգի բնակչաց բազմութեան համեմատ փուռեր շինուին, թէ փռանց տէրք, և թէ հացագործք կը վաստըկին և կ'ապրին ։

Թէ որ քաշ մի հացին քանի փարա միայն շահ դնելու ըլլամք, ամեն օր 75,000 դահեկան շահ անպատճառ պիտի պտղաբերէ, բայց թէ և տասն փարա շահ ենթադրուի, միշտ 37,500 դահեկան շահ կայ ։

Երաշխաւորեալ ազգային ցրուիչքն (Բաղչըքեար) ալ գործ կը գտնան և կ'ապրին ։ Ցորենին թեփն (քէփէկ) ծախողն ալ կը շահի ։ Եւ այլ ուրիշ շատ մի օգուտք հացագործութենէ յառաջ կուգան, զորս գործոյն ծանօթքն և տեղեակքն լաւ գիտեն ի կարգի դնել։

Արդ ե՛կ և անգամ մը հաշուէ ինքիրենդ թէ միայն ի պէտս Ազգիս հայագործութենէն քանի՞ քանի՞ արդեօք Ազգային ընտանիք և անձինք կարող պիտի ըլլային ապրիլ, և օտար ազգաց ըրած շահը իրենք վաստըկիլ: Ազգայինք հարկաւ կը վերադասեն Ազգայիններէն գնել, թէ որ տեսակին համեմատ ընտիր, ազնիւ և համեղաճաշակ եփուած հացը աժան կամ միջին գնով ծախելու ըլլան:

Բայց աւա՜ղ, այսօրուան օրս մեծագոյն մասամբ Յոյնք և Եւրոպացիք մեր այսչափ ոսկիներն կ'առնուն և կը շահին: Իսկ Մերազգեաց համար ԳՈՐԾ ԿԱՅ, բայց ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ:

## 2.

## ՄԻՍ

Երկու հարիւր յիսուն հազար Ազգային բնակիչք ամեն օր առ նուազն յիսուն հազար քաշ միս կարօտ են. որ է ամսոյն մէջ միլիոն մի և հինգ հարիւր հազար քաշ: Իսկ ինն ամսոյ մէջ՝ (երեք ամիսը Պահոց օրերուն համար դուրս հանեմք, ենթադրելով որ առջի ժամանակին պէս պահք բռնուին) տասն և երեք ու կէս միլիոն քաշ միս կարօտ է Ազգս:

Եթէ մէն մի քաշը միջին գնով ութն արծաթի դահեկան հաշուեմք, իւրաքանչիւր օր 4,000 ոսկի. ամիսն 120,000 ոսկի. իսկ ինն ամսոց մէջ 1,080,000 ոսկի Ազգը ամէն տարի մսավաճառաց քսակը կը լեցնէ:

Թէ որ իւրաքանչիւր քաշին դահեկան մի շահ դնեմք, օրուան մէջ 50,000 դահեկան շահ. իսկ ինն ամսոց մէջ 135,000 ոսկի շահ պիտի բերէ:

Արդ՝ Ազգիս ամեն տարի մսոյ համար վճարած միլիոն

մի և ութսուն հազար ոսկիէն կրեն որչափ արդեօք շահ
կայ ։ Եւ ո՛չ փոք մի ։ Այս ի՛նչ տեսակ անխելքութիւն
է. արդեօք չկա՞ն Ազգայինք մեր Եւրոպական և Ասիա-
կան գաւառաց մէջ. ինչո՞ւ համար անոնց հետ յարա-
բերութիւն չեմք ըներ։ Ինչո՞ւ Ազգային Պաշտօնատարք
այսպիսի ազգօգուտ գործողութեանց վերայ չեն մտա-
ծեր, և ատոնցմէ գոնէ իրենց շահն ալ չեն գիտեր ։
Ինչո՞ւ ամեն տեղ, և ամեն թաղ մսածախի խանութներ
չեն բացուիր ։ Այնչափ անկարող և բթամիտ Ազգ մի
եմք, որ միայն դրամ տալու վարժուած ըլլամք և ո՛չ
երբէք շահելու ։ Թէ որ Ազգայինք մսածախի կարգա-
ւոր խանութներ բանան ամեն թաղ, և ի տես ժողո-
վրրդեան ընտիր և ազնիւ ցեղ ոչխարներ կախուին, և
միջին գնով վաճառուին, քանի՜ քանի՜ գործաւորք և պաշ-
տօնակալք, և որչափ ընտանիք և անգործ մարդիկ
գործ և ապրուստ կը գտնեն. բայց այսօր ասկէց ալ
զրկուած են ։ Եւրոպացիք այս կերպ օգտակար հաշիւ
ընելով և ի գործ դնելով հարստացեր են ։

Աշխարհիս ընթացից մէջ յաջողութիւնն յաջողութեան
ճանապարհ կը բանայ. և բաղդն բաղդի վրայ կայա-
ցած է ։ Նաև մսավաճառութենէ առաջին կարգի
սեղանաւորք յառաջ եկած են, և օրինակն ալ կայ ։
Բանը՝ գործել գիտնալն է, վասն զի ԳՈՐԾ միշտ ԿԱՅ,
բայց ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ։

## 3.

## ՀԱՒ

Տարւոյն մէջ երեսուն հազար ընտանեաց իւրաքան-
չիւրին եթէ վրայի վրայ միայն երեք հաւ դնելու ըլ-
լամք, թիւը իննսուն հազար հաւու կը հասնի ։ Տասն

հազար հաւ ալ աւելցուր յիսուն հազար պանդխտոց համար, յայնժամ լինի հարիւր հազար հաւ ։ Մէն մի հաւը վեց դահեկանէ հաշուելով, ելած գումարն 6,000 ոսկւոյն կը հասնի ։

Նմանապէս մարդ գլուխ տարւոյն մէջ վրայէ վրայ տասնական հաւկիթ հաշուելով, և քսանական փարայի գումարելով, 12,500 ոսկի ալ միայն հաւկթի համար կը վճարուի, թերևս շատ աւելի ։

Վառնացի և Էտիրնեցի Ազգային վաճառականքն ի՞նչ գործ կը գործեն ։ Ո՞ւր է տեղացի Ազգային հաւավաճառ մի ։

## 4.

## ՆՊԱՐՔ

Ազգայինք շարունակ կը գանգատին թէ գործ չկայ ։ Անցի՛ր անգամ մի ամեն հայաբնակ թաղից մէջէն, անցի՛ր բովանդակ քաղքիս բազմամարդ փողոցաց մէջէն, տե՛ս, նայէ՛, քննէ՛, արդեօք Ազգային նպարավաճառ (պագգալ) մի կրնա՞ս տեսնել ։ Յոյնք և Եւրոպացիք քաղքիս չորս կողմն հազարաւոր կրպակս բացին, շարունակ առևտրոյ և դրամ վաստկելոյ վերայ են. իսկ մեր Ազգայինքն ալ բերաննին բաց ընդարմացեալ միայն կեցեր կը նային ։ Տե՛ս անգամ մի յետագայ դրածէս՝ թէ Ազգայինք տարւոյն մէջ ո՞րչափ ոսկիս կը վճարեն նպարավաճառաց ձեռքը ցեղ ցեղ նպարներու համար։

Ա. — ԸՆԴԵՂԷՆՔ. Եթէ երեսուն հազար Ազգային ընտանեաց իւրաքանչիւրին տարւոյն մէջ յիսուն քաշ ընդեղէն, օխեռ, բակլայ, ոսպ, լուբիա և այլն հաշուելու ըլլամք, միլիոն մի և հինգ հարիւր հազար քաշի կը հասնի։ Հինգ հարիւր հազար քաշ ալ հաշուէ տարւոյն մէջ գաւառականաց համար. երկու միլիոն քաշ

ընդեղինաց պէտս ունին Ազգայինք ։ Եթէ իւրաքան-չիւր քաշի համար վրայի վրայ երկուք ու կէս արծաթ դահեկան վճարուելու ըլլայ, 50,000 ոսկւոյն կը հասնի գումարը ։

Բ.— ՀԱՄԵՄՔ. Այս գումարին վրայ աւելցուր սոխի, սխտորի, աղի, պղպեղի, և այլ համեմից համար տարւոյն մէջ գէթ 20,000 ոսկիս ալ ։ Վասզի տարւոյն մէջ տան գլուխ քիչէն քիչ յիսուն քաշ միայն սոխ հաշուե-լու ըլլամք, երեսուն հազար ընտանիք մի և կէս միլիոն քաշ սոխի կը կարօտին. իւրաքանչիւր քաշը քսա-նական արծաթի փարայիւ գումարեմք, 7,500 ոսկ-ւոյ կը հասնի ։ Այս գումարին մէջ չեն դեռ ուրիշ վերոյիշեալ նպարաց համար վճարուած դրամներ ։

Գ. — ԲՐԻՆՁ. Մարդ գլուխ տարւոյն մէջ վրայէ վրայ հինգ քաշ բրինձ հաշուելով երկու հարիւր յիսուն հա-զար Ազգայնոց համար միլիոն մի երկու հարիւր յիսուն հազար քաշ բրինձ պէտք է ։ Իւրաքանչիւր քաշը երեք արծաթի դահեկանաւ բազմապատկեմք, և ահա 37,500 ոսկի լիրա ամեն տարի Ազգս բրնձի համար կը վճարէ. թերևս ալ շատ աւելի ։ Ո՞ւր են Եգիպտոսի և ուրիշ քաղաքաց Ազգային վաճառականքն մեր։

Դ. — ԿԱՐԱԳ. Տարւոյն մէջ ընտանիքի մը համար տասն և հինգ քաշ կարագ կամ արդար իւղ հաշուելով վրայէ վրայ երեսուն հազար ընտանիք չորս հարիւր յիսուն հազար քաշ արդար իւղոյ կարօտ են ։ Երեսուն հազար քաշ ալ աւելցո՛ւր յիսուն հազար գաւառակա-նաց համար, ընդ ամենն չորս հարիւր ութսուն հազար քաշ կարագ լինի. իւրաքանչիւր քաշը տասներկու ար-ծաթի դահեկանաւ գումարելով 57,600 ոսկի լիրայի կը հասնի ելած գումարն ։

Ե. — ՁԷԹ. Եթէ իւրաքանչիւր ընտանիք տարւոյն մէջ երեսուն քաշ ձէթ գնելու ըլլան , երեսուն հազար

ընտանիք ինն հարիւր հազար քաշ ձիթոյ կարօտ են ։ Ասոր վերայ աւելցուր հարիւր հազար քաշ ձէթ ալ յիսուն հազար գաւառացւոց համար, և այն ժամանակ ձիթոյն գումարն միլիոն մի քաշի կը հասնի։ Իւրաքանչիւր քաշը արծաթի վեց դահեկանաւ բազմապատկեմք, և ելած գումարն 60,000 լիրայի կը հասնի։

Զ. — ԽՄՈՐԵՂԷՆ. Եթէ իւրաքանչիւր ընտանիք տարւոյն մէջ վրայի վրայ վեց քաշ եփելի խմորեղէն՝ այսինքն (Մօգարօնի) և Թելահայս (Շեհրիյէ) գնեն, երեսուն հազար ընտանիք հարիւր ութսուն հազար քաշ խմորեղէնի պէտս ունին. քսան հազար քաշ ալ գաւառականաց համար աւելցուր, կ՚ըլլայ երկու հարիւր հազար քաշ. իւրաքանչիւր քաշը հինգ դահեկանաւ բազմապատկեմք, ելած գումարն 10,000 ոսկւոյն կը հասնի ։

Է. — ՊԱՆԻՐ. Երկու հարիւր յիսուն հազար աղգայնոց իւրաքանչիւրին օրուան մէջ վրայի վրայ պանրի համար եթէ հինգ փարա միայն հաշուի, տարւոյն մէջ 144,000 ոսկւոյն կը հասնի գումարն ։ Ընդ ամենն 349,000 ոսկի լիրա քանի մը գլխաւոր նպարաց համար կը վճարուի։ Ո՞ւր են Մայրաքաղաքիս մէջ գործ չենաց ըսողքն. ահա ԳՈՐԾ ԿԱՅ բայց ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ։ Ո՞ւր են Ազգային վաճառականքն մեր. ինչո՞ւ բաժանորդական ընկերութիւնս չեն հաստատեր. թող Եւրոպացւոց նման յիւրաքանչիւր թաղի նպարավաճառաց կարգաւորեալ մթերանոցս և խանութս բանան. և Ազգայինք ալ իրենց պիտոյքն անոնցմէ հոգան, որով այսչափ հազարաւոր ոսկիք իրենց ձեռօք չելնէ և. պատրաստ աւնելով շատ մի ընտանեաց ապրուստ և անգործ երիտասարդաց գործ գտնուի ։ Ահա ամեն օր աչաց առջև կը տեսնեն անոնց այլ և այլ նիւթերով և ապրանքով զարդարուած խանութները։ Ցահավաճառութիւն մեծ հան

*է, երբ շատ մի ապրանք վաճառելու ըլլան, և այս ալ կը յաջողի՝ երբ որ ընտիր և ազնիւ և անխարդախ տեսակն ըլլայ, և բանաւոր և արդար գնով ծախուի։*

## 5.

# ԲԱՆՋԱՐԵՂԷՆՔ

*Մարդոյս ամենահարկաւոր և օգտակար ուտոյից մին ալ կանանչեղէնք և խոտեղէնքն են, որոց ամեն օր կը կարօտիմք։ Մայրաքաղաքիս չորս կողմը շատ բանջարանոցք կան. ասոնք մեծագոյն մասամբ Առնավուտաց ձեռքն են։ Այս տեսակ պարտիզաց մէջ եղած մշակութիւնք բոլորովին անկատար են. ինչ որ տեսան, զայն միայն կը սերմանեն և զայն կը ծախեն։*

*Արդ եթէ երեսուն հազար ընտանեաց խորաքանչիւրին գլուխ օրական բանջարի համար առնուազն վրայէ վերայ հինգ հինգ դահեկան հաշուեմք վասն կերակրոյ, աղցանի, համեմից ևայլն, ամեն օր Ազգային քաղաքացիք հազար հինգ հարիւր ոսկի անշուշտ պիտի վճարեն, որ է տարւոյն մէջ հինգ հարիւր քառասուն հազար ոսկի, և թերևս շատ ալ աւելի։ Այս գումարին վերայ աւելցուր հարիւր ութսուն հազար ոսկի ալ, գոնէ յիսուն հազար գաւառականաց մարդ գլուխ դահեկան մի դնելով, այն ժամանակ տարւոյն մէջ քաղաքացիք և գաւառացիք 720,000 ոսկիս կը վճարեն միայն բանջարեղինաց համար։*

*Պօլսոյ մայրաքաղաքիս մէջ շատ մի բանջարանոցք և պարտէզք կան. այսինքն ի Վլանկա, ի Սամաթիա, յԵտիգուլէ, ի Խասքէօյ, ի Պէշիքթաշ, յՕրթաքէօյ, ի Պէյգօզ և հաստեղուանք ընդհանրապէս շատ մի Ազգայինք ալ կը բնակին. ինչ բանի համար այսպիսի օգտակար և*

*շահաւոր արհեստին չեն ծառայեր։ Ահա յայտնի կ'երեւի թէ ամէն տարի միայն բանջարեղինաց համար Ազգայինք եօթն հարիւր հազար ոսկիէն աւելի կը հատուցանեն ։*

**ԳՈՐԾ ԿԱՅ, ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ ։**

*Եւրոպա մարդ մի եթէ ըստ կարգի բանջարանոց մի ունենայ, ոսկի հանք մի ունեցած կ'ըլլայ. ամեն օր կանանչեղինաց հետ ոսկիներն ալ միատեղ կը քաղէ. շատ է որ իւր աշխատութիւնն հողոյն չզլանայ, այլ մշակած երկրին կրկին և երեքկին հատուցանէ իւր աշխատանքն ։*

*Ի՞նչ ըսեմ և ի՞նչ գրուցեմ։ Այս անհոգութիւնն և այս դանդաղութիւնն որո՞ց աւելի յանցանք է. ռամիկ՝ տգէտ և աղքատ ժողովրդեա՞ն, թէ նոյն իսկ ի ժողովրդենէ ընտրեալ Թաղականա՞ց, որոց ձեռքին հաւատացաւ ամենայն հոգ և խնամք ողորմելի ժողովրդեանս։*

## 6.

## ՊՏՈՒՂՔ

*Ամենափոքրիկ մանկիկէն սկսեալ մինչև ցծերն՝ ամենքն ալ կը ցանկան և կը փափաքին, թէ թարմ և թէ չոր պտուղ ուտել ։ Աղքատն անգամ որ կը մուրայ, ինքն ալ կ'ուտէ և զաւակաց ալ սիրով կը կերցնէ ։*

*Արդ եթէ ոք օրուան մի մէջ վրայի վրայ քանանական ֆուր թէ թարմ և թէ չոր պտղոց համար վճարէ, տարւոյն մէջ հարիւր ութսուն և երկուք ու կէս դահեկանի կը հասնի ։ Թէ որ այս հաշուով երկու հարիւր յիսուն հազար Ազգայնոց թիւը բազմապատկեմք, ելած գումարն 450,000 ոսկւոյ կը հասնի ։*

*Առջի ժամանակ շատ մի Ազգային պտղավաճառք կային, որք հանգիստ ալ կ'ապրէին, բայց հիմա շատ*

*քիչ միացին։ Թուրքք, Առնաւուտք, Յոյնք և այլք գրեթէ իրենց սեփհականած են այս առուտուրն ալ։ Արդեօք Ազգայինք մեր չե՞ն կարող կարգաւորեալ պտղոց խանութս բանալ, ուր որ Ազգին բազմութիւնն կայ, տեղւոյն և անձանց յարմար տեսակ տեսակ պտղովք զարդարել, ու կարելի եղածին չափ աժան գնով ծախել։ Եթէ զայս ընեն ո՞րչափ արդեօք ընտանիք պիտի ապրէին, և եթէ վերոյիշեալ հարիւրաւոր և հազարաւոր ոսկւոյ քառորդին քառորդը միայն իրենց ձեռօք շրջան և պտոյտ առնոյր, ինքզինքնին իրաւցնէ երջանիկ պիտի համարէին*։ ԳՈՐԾ ԿԱՅ, ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ։

## 7.

## ՍՈՒՐՃ ԵՒ ՇԱՔԱՐ

*Երկու հարիւր յիսուն հազար Ազգայիններէն՝ յիսուն հազարն ի բաց առնլով, երկու հարիւր հազար այր և կին, ծեր և տղայ, ծառայ և աղախին ամենքն ալ ամեն օր սովորական սուրճը պիտի խմեն։*

*Եթէ օրուան մէջ առ նուազագոյնն մարդ գլուխ երեք սկահակ (ֆինճան) սուրճ հաշուեմք, իւրաքանչիւր օր վեց հարիւր հազար սկահակ սուրճ կ՚սպառի։ Թէպէտև՝ ինչպէս որ յայտնի է, կան շատ մի արք և կանայք, որք օրն ի բուն տասն կամ քսան սկահակ սուրճով հազիւ թէ կը շատանան։*

*Եթէ մեք առ նուազագոյնն տարւոյն մէջ իւրաքանչիւր ընտանեաց համար տասն և հինգ քաշ սուրճ հաշուեմք, հինգ հարիւր հազար քաշ սուրճ պէտք է քաղաքացի Ազգայնոց. վաթսուն հազար քաշ ալ աւելցուր յիսուն հազար գաւառականնաց համար, ընդամենն լինի հինգ հարիւր վաթսուն հազար քաշ։ Իւրաքանչիւր*

*քաշլին գինին տասն և վեց արծաթի դահեկանաւ բաղ-մապատկեմք, ամեն տարի 89,600 ոսկի շարունակ կը վճարեմք ։*

*Իսկ շաքարին նկատմամբ՝ թէ օրհոյն համար և թէ անուշեղինաց և իւրաքանչիւր ընտանեաց այլ և այլ պիտոյից համար՝ տարւոյն մէջ բովանդակ Ազգիս հա-գիւ կը բաւեն երկու միլիոն քաշ շաքար, պաւառա-կանքն ալ միատեղ առնլով ։ Իւրաքանչիւր քաշին հինգ արծաթի դահեկան արժէք դնելով, 100,000 ոսկի ալ ամեն տարի Ազգս շաքարի համար կը վճարէ ։ Եւ այսչափ հազարաւոր ոսկիներն շարունակ օտարական վաճառականաց ձեռքին կը լեցնեմք ։*

*Ո՞ւր են Անգղիոյ մեր Ազգային վաճառականքն . ին-չո՞ւ այսպէս դանդաղ կը շարժին . ինչո՞ւ անհոգ և ան-գործ կը կենան ։ Ինչո՞ւ բաժանորդական ընկերութիւնս չեն հաստատեր ։ Ինչո՞ւ թաղականքն ալ ամեն թաղ առանձին առանձին կրպակներ չեն կանգներ օրհոյ և շաքարի համար, ուր ընտիր տեսակներն աժան գնով վաճառուին Ազգայնոց . և այսչափ հազարաւոր ոսկի-ներն Ազգայնոց ձեռօք շրջան և պտոյտ առնելով քանի մը ընտանիք կարող ըլլան ապրիլ, և վաճառականքն ալ շահին ։*

**ԳՈՐԾ** *շատ* **ԿԱՅ**, *բայց* **ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ** ։

## 8.

# ԳԻՆԻ ԵՒ ՕՂԻ

*Առջի ժամանակ քաղքիս մէջ շատ մի գինետունք կային Հայոց և Յունաց ձեռքը . իսկ հիմա քաղքիս առջի ընթացքն բոլորովին փոխուելով այս առուտուրն ալ մեծագոյն մասամբ օտար ազգաց ձեռքն անցաւ . և*

հետեւաբար Ազգայնոց շատ գինետունքն ալ գոցուեցան, և ճնացողքն ալ ողորմելի վիճակի մէջ մնացին ։ Ի վերայ այսր ամենայնի Ազգային քաղաքացիք և գաւառացիք շարունակ թէ՛ իրենց տան մէջ և թէ գինետանց մէջ գինի և օղի կ՚ըմպեն։

Արդ՝ երկու հարիւր յիսուն հազար Ազգային բնակիչներէն հարիւր յիսուն հազարն, այր և կին, ծեր և երիտասարդ, գաւառական, բեռնակիրէն և մշակէն սկսեալ, մարդագլուխ օրուան մէջ վրայի վերայ գինիի և օղիի համար դահեկան մը վճարելու ըլլան, ամեն օր 1,500 ոսկի, և տարուոյն մէջ 540,000 ոսկի կը վճարուի, և թերևս շատ ալ աւելի ։

Եթէ ընկերութեամբ թաղ թաղ կարգաւորեալ խանութք և կրպակք բացուէին, և փոխանակ չինծու և գունաւոր գինեաց՝ ազնիւ և անապակ գիներ ծախելու ըլլային, որչափ մարդիկ գործ պիտի գտնէին, ի՞նչչափ ընտանիք պիտի ապրէին այսչափ հազարաւոր ոսկին իրենց ձեռօք շրջան և պտոյտ առած ժամանակ։

Օտարազգիք կը վաստկին, Ազգայինք կեցեր կը նային, մինչ իրենց ալ ԳԻՐԾ ԿԱՅ բայց իրենցմէ ԳՍՐԾՈՂ ՉԿԱՅ

## 9.

# ԱՆՈՒՇԵՂԷՆՔ

Քանի մի տարի առաջ շատ մի քաղցրավաճառաց խանութք բացուած էին, ուր [illegible], [illegible], [illegible], [illegible], [illegible] [illegible], և ուրիշ կերպ կերպ անուշեղէնք շարունակ կը ծախուէին։ Խանութպանքն գրեթէ մեծագոյն մասամբ Ազգայինք էին ։ Քաղքիս ընթացքն փո-

փոխուելուն համար այս կերպ քաղցր խմորեղէնքն ալ բոլորովին Եւրոպայի ֆօռօշ ձևոյն և տեսակին փոխուեցան և այսպէս առաջինքն բոլորովին գաղրեցան, իսկ վերջինքն սկսան ծաղկիլ, խանութներն օր աւուր շատցան և շարունակ կը գործեն, մանաւանդ ձմեռնային եղանակ :

Ինչ ըսելու եմք Ազգայնոց ծուլութեան և զանդաղութեան, որ այս կերպ խմորեղինաց արդէն վարժուած ըլլալով, մեծ յարմարութիւն և յաջողութիւն ունէին, նաև նոր ոճոյն հետևելու. արդեօք Յունաց և Եւրոպացւոց նման տեսակ տեսակ խմորեղէնս չէին կրնար շինել և իրենց ապրուստ ճարել, քան թէ պարապ և անգործ կեանք անցնելով վաստակածնին ուտել և լմնցնել և յետոյ ողորմութեամբ ապրելու պարտաւորուիլ: Թէ որ նոր կերպ անուշեղինաց արհեստին հետհանգած ըլլային, քանի ընտանիք, որչափ աշխատաւորք, գործաւորք և ծառայք պիտի վաստակէին ու ապրէին :

Եթէ երեսուն հազար Ազգային ընտանեաց իւրաքանչիւրը վրայի վրայ տարւոյն մէջ քաշ մի միայն [illegible] գնէ, երեսուն հազար քաշի կը հասնի. այս վերայ աւելցուր տասն հազար քաշ ալ [illegible] համար, ընդամենն քառասուն հազար քաշի կը հասնի : Իւրաքանչիւր քաշն ութնական արծաթի գնահատմամբ բազմապատկէ, գումարը երեք հազար երկու հարիւր ոսկւոյն կը հասնի: Եւ այս գումարէն վերայ աւելցուր առ նուազագոյնն քսան հազար ոսկի ալ տարւոյն մէջ բովանդակ Ազգայնոց համար վասն այլևայլ Եւրոպական շաքարեղինաց և տեսակ տեսակ [illegible], [illegible], [illegible], [illegible] ըսուած անուշ խմորեղինաց համար, որով ընդ. ամենն լինի 23,200 ոսկի լիրա, զոր Ազգայինք մեր ամէն տարի կը վճարեն, Յոյնք ու Եւրոպացիք, ալ շարունակ կը վաստկին: ԳՈՐԾ ԿԱՅ ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ:

## 10.

# ԶԳԵՍՏՔ ԱՐԱՆՑ

Մայրաքաղաքիս երկու հարիւր յիսուն հազար քաղաքացի և գաւառացի Հայ բնակիչներէն գոնէ հարիւր հազար այր պիտի հաշուեմք, որք կը հագնին զանազան ձեւերով արտաքին հագուստներ, որք են բաճկոն ([illegible]), անդրավարտիք ([illegible]), զգեստ ([illegible]), և վերազգեստ ([illegible])։ Այս հագուստներէն հարկաւ տարին անգամ մի կարգ մի նոր կը շինեն։ Եթէ այս չորս կտոր հագուստներու համար մարդ գլուխ հինգ Օսմանեան ոսկի լիրա հաշուեմք, Ազգայինք ամեն տարի 500,000 ոսկի կը վճարեն իրենց կարգ մի զգեստ պատրաստելոյ համար. Թէպէտև բազմաց կարծիքին համեմատ արք ամեն տարի միլիոն մի ոսկի լիրայէն աւելի կը վճարեն իրենց զգեստուց համար։

Պտրտէ՛ անգամ մի, ի Պօլիս, ի Բերա, ի Ղալաթիա և բովանդակ մայրաքաղաքիս չորս կողմն, և տես թէ որչափ հարիւրաւոր դերձակի կրպակք կան, և որչափ պատրաստ զգեստուց խանութք, որոց մէջ օտարազգիք չարունակ կը գործեն և կը վաճառեն։ Փնտռէ՛, նայէ՛, կրնա՞ս արդեօք գտնել Ազգային դերձակ մի և կամ պատրաստ զգեստուց խանութպան մի։

Երբեմն Ազգային դերձակի արուեստաւորք խիստ շատ էին, և բաւական հարստութիւն՝ այսինքն խանութ, տուն և կալուածներ ունէին, և հանգիստ ալ կ'ապրէին. Երբոր Մայրաքաղաքացիք սկսան ըստ Եւրոպացւոց տարազու զգենուլ, մեր Ազգային դերձակքն փոխանակ ճգնելոյ և ջանալոյ նոր արհեստը ձեռք ձգել

և զգեստուց նոր տարազն պատրաստել՝ ամենքն ալ անճրկեցան, ձգեցին իրենց արուեստը, ծախեցին իրենց խանութը, կերան լմնցուցին իրենց վաստակը, և այսօր իրենց որդւոցն վերջին աղքատութեան մէջ մնացին։

Ազգային վարչութեանց պարտքն է, մասնաժողովս կարգել, ընկերութիւնս հաստատել, տղայքը քաջ դերձակաց քով աշակերտ տալ և հոգ տանել, որպէս զի պզտիկուց այն արուեստին մէջ մեծնան։ Թէ որ ամեն թաղ Ազգային քաջ դերձակք գտնուէին՝ վերայիշեալ միլիոն մի ոսկւոյն գումարն իրենց ձեռօք պտոյտ և շրջան առնլով՝ որչափ արդեօք ընտանիք պիտի ծաղկէին, արուեստ պիտի ուսանէին, և շատ մի ալ անգործ մարդիկ գործ պիտի գտնէին։ Ո՞ւր են Եւրոպա բնակող Ազգային վաճառականքն մեր. ինչո՞ւ ապահով եղանակաւ և բաժանորդութեամբ ընկերութիւնս չեն հաստատեր, որոց ամեն տեսակէ ազնիւ տաւիններ (չուխայ) ու պատրաստ զգեստներ յուղարկեն։ Ահա արհեստ մի, դերձակութիւն. որ մեր Ազգին մէջ կարծես թէ բնաւ չկայ. մինչ եթէ դերձակութիւնը ծաղկէր, քանի՜ ընտանիք անով կրնային ապրիլ. իրենք կը շահէին, և այլոց շահուց ալ պատճառ կ'ըլլային։ Ահաւասիկ ԳՈՐԾ ԿԱՅ, բայց ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ։

Ուրիշ ազգաց օրինակը կը ցուցնէ՝ թէ ասոնք և ասոնց նման ազգօգուտ գործողութիւնքն են, որք Ազգին ոյժն ու կարողութիւնը կ'աւելցնեն։

## 11.

## ԶԳԵՍՏՔ ԵՒ ԶԱՐԴՔ ԿԱՆԱՆՑ

Ասոնց վերայ չեմ ուզեր երկայն խորհրդածութիւն ընել. միայն այս կ'ըսեմ որ Տիկնոջ մի, կամ Օրիորդի

մի փայլչութեան, ատոկճանին և կացութեան համեմատ տարեկան զգեստուց և զարդարանաց համար վեր ի վերոյ հաշուելով առ նուազն և առ նուազագոյնն հարկաւ վեց ոսկի լիրա պէտք է։ Հոս ալ դարձեալ կանանց միայն արտաքին զգեստները կ՚իմանամք․ ինչպէս շրջազգեստ (ֆիստան), վերազգեստ (ճուպպէ), թիկնոց (մանթէլ) և գլխարկ (շաբգա)։

Կանանց թիւն ալ հարիւր հազար կը հաշուեմք․ անոնք որք չափահաս են և գէթ տարւոյն մէջ անգամ մի կարողութիւն ունին. Տիկնայք, Օրիորդք, Դաստիարակք, աղախնեայք, ևահա շուրով 600,000 Օսմանեան ոսկի լիրայի ծախք մի կը բարդուի. զոր ամեն տարի Հայազգի կանայք իրենց գրպանէն կը հանեն։ Թէպէտ և չատերը՝ ինչպէս որ վերը արանց զգեստուց համար ըլուցեցի, տարւոյն մէջ կանանց արտաքին զգեստուց և զարդարանաց համար ալ նշանակուած ծախուց գումարը կրկինին կը հասցնեն ։

Ո՞ւր են Ազգային կանացի զգեստուց ձևողներ եւ կարողներ և բանողներ․ ո՞ւր են Հայ կանայք, որք երբեմն իրենց ճարտարահիւս ասղնեգործ բանուածներով բոլոր Եւրոպացիները զարմացուցեր էին. ինչո՞ւ հիմա պարապ կը նստին տան մէջ ։ Աւա՜ղ, որ Ազգիս քսակէն այսչափ բիւրաւոր ոսկիներն օտար ազգաց ձեռքն կը լեցնեմք․ և մեր Կանայք և Աղջկունք անգործ և անօթի կը կենան ։ Բայց այս մեղքն և յանցանքն որո՞ց է․ ո՞չ ապաքէն վարչութեանց և Թաղական ժողովոց. որոց անհրաժեշտ պարտք էր իւրաքանչիւր Թաղի մէջ աղջկանց դպրոցներ բանալ, ուսմանց հետ ձեռագործ և ասղնեգործ հիւսուածս սովրեցնել, որպէս զի ապագային մէջ իրենց բարւոք կացութեան օգտակար ըլլան, Ազգին բեռ չըլլան. և Ազգայինք իրենց վերայ հանապազ հոգելու չըլ պարտաւորին ։

Բայց միայն Ազգային ժողովները չմեղադրեմք. վասն զի Ազգային Տիկնայք ալ շատ մեծ պատասխանատուութեան ներքեւ են. և իրենց աւելի կը վերաբերի այս ազգօգուտ ծառայութիւնն կատարել ։ Արդեօք անհնարին և ամօթ բա՞ն մի է, թէ որ պարկեշտ և երկիւղած Տիկնայք, թաղ թաղ կարօտ և չափահաս աղջիկները մասնաւոր տան մի մէջ ժողովեն, և պիտանի և ընտիր ձեռագործս սովրեցնել տան, կար կարել, կանացի զգեստներ ձեւել, և անոնց վերաբերեալ այլ և այլ զարդարանս յօրինել, որ այսպէս օտարազգի կանանց հազարաւոր ոսկի տալու տեղ մեր Ազգային կանայք և աղջկունք շահէին, լաւագոյն չէ՞ր լինէր արդեօք ։ Անցի՛ր անգամ մի Բերայի, Ղալաթիոյ, Պօլսոյ ամէն փողոցները, ու տե՛ս ո՞րչափ Յունազգի և Եւրոպացի կանայք և աղջկունք կրպակաց մէջ գիշեր ցորեկ կ'աշխատին, կը գործեն, կը շահին և կ'ապրին, դրամ կը դիզեն, տան և ընտանի տէր ալ կ'ըլլան ։ Ինչու որ, թո՛ղ մէկդի Քրիստոնէից կանայքը, ահա՛ բիւրաւոր Օսմանցի կանայք իրենց առջի զգեստուց ձեռք փոխեցին. բոլորովին Եւրոպացւոց նման սկսան զգենուլ. որոց Յոյն և Եւրոպացի գործաւորք կանայք չկրնալով հասնիլ, սնտուկ սնտուկ զգեստ և զարդարանք շարունակ յԵւրոպայէ բերել կը տան ։ Միայն մեր Ազգային կանայք և աղջկունքն են, որ անհոգութեամբ դատարկ կը նստին տան մէջ. և կ'սպասեն որ արք զիրենք կերակրեն և զգեստաւորեն ։ ԳՈՐԾ ԿԱՅ, ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ ։

Բայց թերեւս ներելի է ասոնց անհոգութիւնն. որովհետեւ քան երեսուն տարի առաջ նոյն Ազգային կանայքն էին, որ ինչպէս վերը ցուցեցինք, իրենց ճարտարարուեստ ասղնեգործ բանուածով բոլոր Եւրոպացիքն զարմացուցեր էին. այսօր ալ նոյն են. սակայն ո՞ւր են այն առջի ձեռք տուող, օգնող և առաջնորդող

անձինքն։ Ազգային մեծատուն և կարող տիկնայք անհրաժեշտ պարտքն է այսպիսի ողորմելեաց քաջալերութիւն տալ, մէջերնին ընկերութիւն հաստատել, անոնց օգնել, եղանակ ցուցանել. գոնէ իրենց զգեստն ու զարդերն անոնց չինել տալով բարի օրինակ տալ, և ուրիշներն ալ յորդորել որ իրենց օրինակին հետևին։ Եւ ասկէց աւելի ի՞նչ մեծ զուարճութիւն և ուրախութիւն կրնայ ըլլալ Տանտիկնոջ մը, քան թէ վիպասանութիւններ և բանաստեղծութիւններ կարդալ, կամ թէ թատրոնից, պարահանդիսից և գիշերազուարճութեանց մէջ երկայն ժամ և ժամանակ անցուցանել։ Այս ալ թերեւս ներելի ըլլայ, միայն թէ միւս պարտուց զանցառութիւն չըլլայ։

## 12.

## ՍՊԻՏԱԿ ԿՏԱՒ ԵՒ ԳՈՒՆԱՒՈՐ ԲԱՄԲԱԿԵԱՑՔ

Հաստատուն կը բանեմք միշտ Մայրաքաղաքիս Հայազգի բնակչաց թիւը երկու հարիւր յիսուն հազար, ինչպէս անդամ մի ըսինք. եթէ իւրաքանչիւր անհատի թէ այր ըլլայ, և թէ կին, ներքին և արտաքին հարկաւոր ճերմակ զգեստուց համար տարւոյն մէջ առ նուազագոյնն երեսուն կանգուն կտաւ հաշուելու ըլլամք, եօթն միլիոն հինգ հարիւր հազար կանգուն կտաւի պէտք ունի Ազգս։ Իւրաքանչիւր կանգնոյ գինը առորին հաշուով երկու արծաթի դահեկան ենթադրեմք և բազմապատկեմք, բովանդակը տասն և հինգ միլիոն դահեկանի, այսինքն 150,000 Օսմանեան ոսկի լիրայի կը հասնի. որ ամեն տարի Ազգին քսակէն շարունակ կը պակսի։ Նմանապէս ինչ որ ճերմակեղինաց

համար զրուցեցի, նոյնը կրկնելու է նաև գունաւոր բամբակեայց (դամա և ձի) վրայ ալ. վասն զի չէ թէ միայն կանանց և տղայոց հագուստի համար պէտք են անոնք. այլ և իւրաքանչիւր տան մէջ վարագոյրներու, բազմոցաց, անկողնոց, վերմակաց և ուրիշ այլ և այլ պիտոյից կը գործածուին։ Ըստ այսմ Ազգը տարւոյն մէջ եօթն ու կէս միլիոն կանգուն գունաւոր կտաւեղէնի ևս պէտս ունի։ Եթէ իւրաքանչիւր կանգունը երկու դահեկանաւ բազմապատկեմք, գումարը դարձեալ 150.000 ոսկի լիրայի կը հասնի։ Երկուքը միատեղ 300,000 ոսկի։ Եւ աւելի ցաւալին այն է՝ որ այս մեծ գումարէն հազիւ հարիւրերորդ փոքրիկ մասն .քանի մի Պօլսոյ և Բերայի Ազգային խանութպանաց ձեռ.քը կու գայ։

Ո՞ւր են Անգղիոյ և Գաղղիոյ Ազգային վաճառականքն մեր. ինչո՞ւ օտար ազգաց վաճառականքն մեր Ազգին ոսկիներէն շահին. ինչո՞ւ մասնաւոր ընկերութիւնք չըլլան, որք առանձին դրոշմով ընտիր և աղնիւ գործուածներն հոս յուղարկեն, և յիւրաքանչիւր թաղ բացուած կրպակաց բաշխեն, բանուոր, արդար և տօրին գնով Ազգայնոց վաճառեն։ Արդեօք .քանի՞, քանի՛ ընտանիք պիտի ապրէին, և ո՞րչափ անգործ երիտասարդ.ք գործ պիտի գտնէին։

Այս տեսակ ծանր և մեծ գործողութիւնս գլուխ հանելոյ համար ոյժ մասնաւոր մարդ մի չէ կարող ի գործ դնել. բայց Վերնագոյն Իշխանութիւն մի կրնայ՝ կարող և հիմուտ անձերէ մասնաժողով մի կարգել. Եւրոպացի Ազգային վաճառականաց հետ ընկերութիւնս հաստատել տալ, որպէս զի թէ վաճառականք և թէ արհեստաւորք ի միասին աշխատին, և կարող ըլլան իրենց ընտանիքն ապրեցնել։

Հազիւ երեսուն կամ .քառասուն տարի կայ Ցունաս-

*տանիքին ծաղկինը, որչափ զանազան գործարաններ բացին. մինչեւ ճերմակ կտաւեղէնս անգամ բեռ բեռ այս Մայրաքաղաքիս կը յուղարկեն։ Ամօթ մեզի. փոքրիկ գործարան մի չկրցանք այս Մայրաքաղաքիս մէջ հաստատել, եւ կամ յԱտանա, ուր բամբակն աղնիւ է, եւ ուր բաւական Ազգայինք կան ։* ԳՈՐԾ ՉԿԱՅ, ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ ։

## 13.

## ԿՕՇԻԿ

*Ամենայն ոք, ծեր կամ տղայ, պատանի կամ երիտասարդ, կին կամ աղջիկ, ծառայ կամ աղախին, տանուտէր եւ կամ գործաւոր, ինչ որ ըլլայ, տարւոյն մէջ արդեօք քանի՞ զոյգ կօշկաց կարօտի։ Իւրաքանչիւր անձ իր եւ իւր ընտանեաց վերայ չափէ, մինչեւ կաթ ուտող մանկիկին վերայ, եւ զրուցէ թէ ինչչափ դրամ կը վճարէ. մեծ եւ պզտիկ, ամառուան եւ ձմեռուան, ճամբու եւ տան կօշկաց եւ մուճակաց եւ հողաթափներու համար։ Ես վրայի վրայ տարւոյն մէջ իւրաքանչիւր անձի համար երկու զոյգ ոտից կօշիկ միայն կը դնեմ, եւ երկու զոյգին համար ստորին գնով հարիւր արծաթի դահեկան միայն հաշուեմ, եւ այսպէս երկու հարիւր յիսուն հազար Ազգային Պօլսոյ բնակչաց համար քսան եւ հինգ միլիոն դահեկան, որ է* 250,000 *Օսմանեան ոսկի լիրա կը գումարուի։ Այս գումարը՝ եւ հաւանականաբար ասկէ շատ աւելին, ամեն տարի Ազգս իր քսակէն կը հանէ եւ օտար ազգաց ձեռքը կը լեցունէ։ Վասն զի Ազգային կօշկակարք օրինակի համար հազիւ քանի մի հատ կը ցուցուին ։ Եւրոպացիք եւ առաւել Յոյնք հարիւրաւոր կրպակաց մէջ գիշեր ցերեկ կաշ-*

խանութին և կը գործեն, և այսու կ'ապրին վարպետն, գործաւորն և աշակերտն ալ։

Ինչո՞ւ մեք ալ մեր աղքատ տղայոց այս օգտակար արհեստը չսովրեցնեմք. և ի՞նչպէս Ազգերնիս օր աւուր չաղքատանայ. քանի որ իր հագած զգեստուց համար միայն մի և կէս միլիոն ոսկի շարունակ ամեն տարի կը վճարէ. և ինքն անկէց ամենեւին շահ մի չունի։ Եւրոպին ահագին մեծաքանակութեան առջեւ մուտքին շուքը ևս չերեւնար։

Այս ի՞նչ անխելք ընթացք է։ Արդեօք Ազգիս մէջ խելացի մարդ մի չգտնուի՞ր, որ կարող անձինքն իւր առջին ժողովէ, Ազգին այս ազգակործան ընթացքին դէմ և դարման մի մատուցանէ։ Ըստ իս ասոր ճար և ճարակն գտնել դիւրին է, միայն թէ իմաստուն և հանճարաւոր մարդիկ Ազգային վաճառականաց հետ աղէկ դաշնադրութիւն մի ընեն, զմիմեանս ապահովցնեն, ձեռք ձեռքին տան, իրենք ալ վաստակին, և Ազգայնոց ալ վաստկցնել տան, որով այս սքանչելի միութեամբ Ազգին ոյժ ու կենդանութիւնը վերստին նորոգուի։

Եթէ օտարական մի հարցնէ մեզի՝ թէ դուք վաճառական ազգ մի հռչակուած էք բոլոր աշխարհիս վերայ. և այսչափ Ազգային վաճառականս ունիք յԵւրոպա, ինչո՞ւ անոնց հետ յարաբերութիւն չէք ըներ, որպէս զի ձեր Ազգին այսչափ միլիոնաւոր ոսկիները ձեր մէջ շրջան առնուն. և այս ընելով զմեզ յանդիմանէ, արժանի չե՞մք արդեօք այսպիսի նախատանաց և յանդիմանութեանց։

## 14.

# ՆԿԱՐԷՆ ԴԱՍՏԱՌԱԿՔ

*Ցունաց կանայք և աղջկունք զօրհանապազ յառաւօտուն և յերեկոյին չարունակ ներքին կողմերէն Վօսփորին ծովեզերքն կ'իջնան և հոն իրենց գծած և յօրինած հազարաւոր նկարէն դաստառակները (խաւլի) ծովուն մէջ կը լուանան, կը չորացունեն, և ծրարներ կապելով կը վաճառեն ։*

*Ինչու մեր Ազգային կանայք և աղջկունք Ցունաց նման չեն աշխատիր և չեն գործեր՝ այլ պարապ կընստին տուներնին և կը մուրան։ Ինչու այս կերպ արհեստներով ապրուստնին չեն ճարեր։ Բաւական է որ մարդս կամենայ, վարպետն ալ կը գտնէ, եղանակն ալ կը սորվի։ Թող երթան և տեսնեն Ցունաց կանայքն՝ թէ ինչպէս կ'աշխատին, ու ընտանիքնին կը կերակրեն, կը զգենուն, դրամ և ըռզակ ալ կ'աւելցնեն ։ Անոնք ալ մեզի նման մարդ են, բայց մեք անոնց նման աշխատող՝ գործունեայ չեմք։ Անոնք գործոց* ԳՈՐԾՈՂ *ունին, բայց մեր գործոց* ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ ։

*Թէ որ յիսուն հազար Ազգային կանայք և աղջկունք, և աղախինք տարւոյն մէջ իրենց զլխոյն ծածկոյթի համար երկերկու հատ այս նկարէն դաստառակներէն գնեն, հարիւր հազարի պէտս ունին և իւրաքանչիւրը հինգ դահեկանաւ բազմապատկեմք, հինգ հազար ոսկւոյն կը հասնի, թող գաւառացւոց գնածն ։*

*Բայց ասկէ երեսուն հազար ընտանեաց համար ալ նուազն երեք հազար ոսկի ալ աւելցուր՝ գլխի և երեսի բարձի, վերմակի և ուրիշ կահուց գործածութեանց համար, ընդ ամենն* 8,000 *ոսկւոյ կը հասնի գումարն ։*

Ո՞րչափ աղքատ ընտանիք այդուստ պիտի գտնէին թէ որ ձեռք տուող և օգնող մի ըլլար իրենց ։

Առաջ բաւական ճարտարարուեստ Ազգային դաստառակաց նկարիչ կանայք ալ կային. բայց այսօր ամենքն ալ յետին չքաւորութեամբ կ'ապրին. ոմանք ալ արուեստնին թողուցած ողորմելի վիճակի մը մէջ են ։ Այսպիսի արհեստաւորաց պէտք է արդուստ կողմանէ իրենց վիճակին և կացութեան բաւական ամսական մի վճարելով, քանի մի յարմար թաղեր առանձին առանձին տուներու մէջ աղքատ աղջկանց նոյն արուեստն սորվեցնել տալ, և անոնց իրենց աշխատութեամբ ներկած և նկարած դաստառակներն գլխոյ, երեսի բարձի, վերմակի և ուրիշ պիտոյից համար գնել և գնել տալ թաղականաց հոգը պիտի ըլլայ, որպէս զի անոնց շահովը եղած ծախքը կարող ըլլան վճարել ։ Արուեստաւորք ալ կը պարտաւորին ի բաքանչիւր թաղի բնակչաց յարմար նկարներ գործել ։ Բաւական է որ քանի մի տարւոյն մէջ շատ մի աշակերտուհիք վարպետ ելլեն, այնուհետեւ թաղականք ալ կ'ազատին ուրիշ շատ մի ծանրութիւններէն, և քանի որ աղքատ և ողորմելի աղջկունք շահաւոր արուեստ մը բռնելով դատարկաշրջութեամբ իրենց կեանքը չեն անցուներ, այլ և ոչ անկարգութիւնք կը ծնանին, և ոչ անանկ խեղճեր օրապահիկին համար եկեղեցեաց և ժողովարանաց դուռները կը յաճախեն ։

## 15.

# ՋԱՆԱՋԱՆ ՊԻՏՈՅՔ

## ԹԱՇԿԻՆԱԿ, ԳՈԻԼՊԱՅ, ԲՐԴԵԱՅՔ, ԳԼԽԱՆՈՑ, ՀՈՎԱՆՈՑ, ՁԵՌՆՈՑ, ՄՈՒՇՏԱԿ

*Ամեն Ազգայինք իրենց գործածութեան համար տարւոյն մէջ առ նուազն հինգ հարիւր հազար ճերմակ և գունաւոր թաշկինակաց պէտք ունին, մարդ գլուխ երկու հատ հաշուելով։ Եթէ մէն մի թաշկինակին երեք արծաթի դահեկան գին կարենք, 15,000 ոսկւոյն կը հանի գումարն ։*

*Նմանապէս եթէ տարւոյն մէջ անհատ անձի մի համար երկու զոյգ գուլպայ (չորապ) միայն բաւական սեպենք, բոլոր ազգայինք հինգ հարիւր հազար զոյգ գուլպայի առ նուազն կարօտ են ։ Եթէ գուլպայի մի համար հինգ դահեկան վճարեն. ամեն տարի Ազգն միայն մարդ գլուխ երկու զոյգ գուլպայի համար 25,000 ոսկի լիրա կը վճարէ ։*

*Դարձեալ Երկու հարիւր յիսուն հազար այր և կին Ազգայինք տարւոյն մէջ գոնէ յիսուն հազար բրդեայ ներքին զգեստուց (ֆանէլա) կարօտ են, եթէ երեսնական դահեկանաւ բաղմապատկեմք, գումարն 15,000 ոսկւոյն կը հանի ։*

*Նոյն պէս հարկաւ հարիւր հազար Ազգային արք տարւոյն մէջ գէթ երկու գլխանոցի կամ (ֆէսի) կարօտ են ։ Եթէ մէն մի գլխանոցը իւր ծոպին (փիւսկիւլ) հետ քան արծաթի դահեկանաւ հաշուեմք երկու հարիւր հազար գլխանոցի համար 40,000 ոսկի լիրա Ազգս ամեն տարի պիտի հատուցանէ ։*

Դարձեալ երկու հարիւր հազար այր և կին ազգայ-
նոց համար ամեն տարի գոնէ յիսուն հազար հովանոց
պէտք է ։ Եթէ առնուազն իւրաքանչիւր հովանոցը վեր
ի վերոյ երեսուն արծաթի դահեկանաւ բազմապատ-
կեմք, գումարն 15,000 ոսկւոյն կը հասնի ։ Բայց ար-
դեամբ այս գումարէն շատ աւելի կը վճարուի, մանա-
ւանդ կանացի հովանոցաց համար ։

Դարձեալ՝ եթէ երկու հարիւր յիսուն հազար Ազ-
գայիններէն միայն հարիւր հազարը, խառն այր և կին
ձեռնոցի մի համար քսան դահեկան վճարեն, 20,000
ոսկւոյն կը հասնի գումարն ։

Դարձեալ երկու հարիւր յիսուն հազար ազգայնոց
մեծագոյն մասն մուշտակի (քիւրք) վարժուած են ։ Եթէ
առնցմէ յիսուն հազարը միայն, այր և կին կամ նոր
մուշտակ շինել, և կամ ունեցածը նորոգել տայ, և
վեր ի վերոյ հաշուով իւրաքանչիւրն հարիւր դահեկանի
չափ ծախք ընէ, գումարն 50,000 ոսկւոյն կը հասնի ։

Այսպէս վերոյիշեալ զանազան պիտոյից համար ընդ-
ամենն 180,000 ոսկի կը ծախուի ։ Ազգային վաճառա-
կանքն մեր ո՞ւր են ։ Որչափ և հաւատարիմ անձինք
կան, որք անգործ վիճակի մէջ չքաւորութեամբ կը
հալին ու կը մաշին ։ Եթէ այսպիսեաց ձեռք տրուի և
բաժանորդական ընկերութեամբ յիւրաքանչիւր թաղի
վերոյիշեալ վաճառաց համար մթերանոց խանութք
բացուին, թէ իրենք կը շահին և թէ Ազգային ողոր-
մելիքն օրական ապրուստնին կը ճարեն ։

Թաղական խորհրդոց պարտք է յորդորել ժողո-
վուրդն, կարելի եղածին չափ իրենց մէջ ընկերութիւն-
ներ հաստատել, յիւրաքանչիւր թաղի մէջ կրպակներ
բանալ, աշխատիլ, շահիլ և ինքզինքնին ապրեցնել ։

Ահա՛ ԳՈՐԾ, ուր է ԳՈՐԾՈՂ ։

## 16.

# ՆԵՐԿԱՐԱՐՔ

Այս շահաւոր և օգտակար արուեստէն (պօյաճը) և ոչ Ազգային արուեստաւոր մի ունիմք ։ Բովանդակ Մայրաքաղաքին մէջ Յոյնք միայն այս արհեստին ձեռք ձգած են։ Բայց մօտ ժամանակ Եւրոպացիք կամաց կամաց մուտ գտան․ ստոյգն ալ խօսելով Եւրոպացիք Յոյներէ աւելի կատարելագործեցին այն արուեստը ։

Ներկարարութիւնը խիստ փափուկ արուեստ մի է․ որովհետև լուսոյն հետ սաստիկ կապակցութիւն ունի։ Քիչ մի լուսոյն առաւելութիւնը և կամ պակասութիւնը գունոյն վրայ խիստ մեծ տարբերութիւն և փոփոխութիւն կ՚ազդեն ։

Ամեն ներկարարք հանգիստ կ՚ապրին, ընտանեաց տէր են ։ Տան, եկամտի և կրպակաց Տեարք։ Շատ մի Ազգայինք կային, և կան ալ, որք Պօլէն լաւած արհեստն ունին. և Ներկարարաց հետ մեծ յարաբերութիւն ունին։ Բայց ասոնցմէ ոչ ոք այս արհեստը սովրելոյ հետամուտ եղաւ ։ Երանի՜ թէ մեր աղքատ երիտասարդքն այս արհեստը սովրէին։

Ամեն մարդ, ամեն ընտանիք և արհեստաւորք ստոյգ գիտեն տարւոյն մէջ Ներկարարաց որչափ դրամ կը հատուցանեն։ Անշուշտ քանի մը հազար ոսկի Ներկարարաց ամեն տարի կը վճարեն Ազգայինք մեր․ բայց ասոր վրայ որոշ հաշիւ մի չեմ կարող տալ և բաւական կը սեպեմ միայն 10,000 ոսկի անցնել յընդհանուր հաշիւ տարեկան ծախուց Ազգիս ի Պօլիս ։

## 17.

# ՇԻՆՈՒԱԾՔ

*Սայդ կերպով չեմ կրնար ըսել թէ տարւոյն մէջ Ազգայինք օրչափ արդեօք տուն և խանութ շինել կ'ուտան։ Բայց այս ալ յայտնի է որ անդադար չէնք կը շինուին, և նորոգութիւնք հանապազ լինին։*

*Արդ ըստ բաւականին ճարտար, քաջ և հանճարաւոր Ազգային ճարտարարուեստք ունիմք առաջին կարգի, որ յԵւրոպա համալսարանաց, ճեմարանաց և բարձրագոյն դպրոցաց մէջ ուսած և վկայականօք իրենց հայրենիքը դարձած են, և շատ մի շինուածովք իրենց հանճարն ու տաղանդը յերեւան հանած են։ Նոյնպէս փորձառու Ազգային ճարտարապետք ալ կան Մայրաքաղաքիս մէջ, ասոնք ալ ի բնուստ և փորձառութեամբ. Ազգային ճաշակն ու հանճարն ցուցուցած են գեղեցիկ մեծամեծ շինուածովք ըստ չափոյ և ըստ կանոնի համեմատութեանց։*

*Մեծ ամօթ է Ազգայնոցս, որ զԱզգային ճարտարապետս ի մի կողմն թողլով՝ Յունազգի և Եւրոպացի ճարտարապետաց ձեռքին կը պարպեն իրենց քսակը։ Այս՝ իր Ազգն բնաւ սիրել չէ։ Յատակագիծն գծել տուր քու ախորժակիդ համեմատ կրկին և երեքկին. բայց միանգամայն յընդհանուր ճարտարապետական կանոնաց չես կրնար խոտորիլ։*

*Ենթադրելով թէ տան մի շինութեան համար հարիւր հազար դահեկան ծախք ըլլայ։ Այսքան ծախքին քառորդն Եւրոպայէն եկած նիւթոց կը հատուցուի, զոր օրինակ աղիւսոյ, կղմինտրի, աղխից և ուրիշ երկաթեղինաց, ապակեաց ևն։ Կէսն ալ հոստեղի եղած նիւթոց*

կը սպառի. զոր օրինակ փայտի, տախտակի, աւազոյ, հասարակ քարի, կրի, գաճի, մարմարիոն քարի ևն. և նաև արհեստաւորաց ինչպէս դարբնաց, նկարչաց ևն։ Իսկ միւս չորրորդ մասն ալ գործաւորաց օրականաց ։

Բայց ե՛կ և տե՛ս. ճարտարապետ մի չէնք շինելոյ համար քանի՞ տեսակ նիւթոց, և որչափ արհեստաւորաց պէտս ունի ։

Հոս նախ կարգաւ դնենք, յետոյ առանձին առանձին իւրաքանչիւրոց վերայ խօսինք ։

Նիւթքն են՝ Աւազ, Կիր, Մարմարիոն, Գաճ (ալչը), Քար հասարակ, Փայտ և Տախտակ ։

Իսկ այս շինուածոց պէտք եղած արհեստաւորքն են՝

| | |
|---|---|
| 1. Գործաւոր | 8. Որմնածեփ |
| 2. Որմնադիր | 9. Ներկագործ |
| 3. Հիւսն | 10. Նկարակերտ |
| 4. Ատաղձագործ | 11. Ապակեվաճառ |
| 5. Երկաթագործ | 12. Մանրավաճառ |
| 6. Դարբին | 13. Իշապան |
| 7. Քարագործ | 14. Հոր բացող |

## ԱՒԱԶ, ԿԻՐ, ԳԱՃ, ՄԱՐՄԱՐԻՈՆ ԵՒ ՀԱՍԱՐԱԿ ՔԱՐ

Տան մի շինութեան համար այսպիսի նիւթոց որչափ դրամ կը տրուի ։ Ճարտարապետք և Տանուտէրք լաւ գիտեն ։ Մեք կիր (քիրէճ) շինող չունիմք, մինչ կիրին առևտուրէն շատ Ալպանիացիք հարստացան, և անհամար գործաւորք քսակնին լեցնելով դարձան իւրենց հայրենիքը ։ Նմանապէս գաճ (ալչը) շինող ալ չունիմք, և վաճառողն ալ չկայ ։

Քարահատայ մէջ ալ Ազգային չկայ, մինչ այդ գործերով թէ ունևորն և աղքատն և թէ միջակային ընտանեաց անձինք գործ կրնան գտնալ ։

## ՓԱՅՏ ԵՒ ՏԱԽՏԱԿ

*Փայտ և տախտակ ծախող (քէրէսթէճի) առջի ժամանակ բաւական Ազգայինք կային, բայց հիմա շատ քիչ մնացին ։ Վասնզի Յոյնք յաջորդեցին անոնց, և ըստ բաւականին յառաջ գացին. որովհետև իրենց ճարպիկութեամբ Սև Ծովուն եզերքը գտնուող վաճառականաց հետ հաղորդակցութիւն ըրին, և այսպէս իրենց ձեռքը անցուցին այս վաճառականութիւնն ալ ։*

*Պէտք է Ազգայնոց որ իրենց պիտոյքն ազգային տախտակավաճառաց ձեռօք լցուցանեն, որպէսզի առքա քաջալերուին և օր առօր յառաջանան, և փոխադարձաբար իրենք ալ կը պարտաւորին կարելի եղածին չափ աժան գնով Ազգայնոց նոյն ապրանքը տալ ։*

*Ո՜րչափ օգտակար կըլլայ թէ որ Ազգային տախտակի վաճառականք իրենց մէջ միութիւն ընեն, ընկերութիւն մի հաստատեն, Վոսփորի նեղուցին ծայրն, և կամ ուրիշ յարմար տեղ գործարան մի կանգնեն, ուր որ մեքենային գերանները սղոցեն և տախտակի վերածեն, և ուրիշ նիւթերն ալ պատրաստեն քաղաքայնոց պիտոյքն լեցնելոյ համար ։*

*Սղոցելոյ մեքենաներ շատ տեսլի ի Բարիզ, ուղ ալ չէին, որք՝ ուզես շոգւով, ուզես ջրով և ուզես անասնով կը շարժին ։*

---

## ԳՈՐԾԱՒՈՐՔ

*Տան մի շինութեան համար առ հասարակ գրեթէ մեծագոյն մասամբ գործաւորք (ամէլէր) Հայազգի են ։ Որովհետեւ զօրաւոր և ուժեղ են, և մեծ յարմարութիւն ունին ։ Բայց մեր ժամանակ Քրդաց ազգն նուազ*

տուրչէքով շատանալով կը յափշտակէ այս գործն ալ Ազգայնոց ձեռքէն ։

Ազգային Տնտեսութեան և Ճարտարապետութեան անհրաժեշտ պարագան է նախ յաջողցուցանել զԱզգային գործարանս գոհացուցիչ օրականաւ, և ոչ թէ ողորմելի և աղքատ Ազգային գործաւորաց անիրաւել չնչին վարձով մի, որք ամառան տօթոյն և ձմերան ցրտոյն ներքեւ կեանքերնին կը մաշեցնեն ։

## ՈՐՄՆԱԴԻՐՔ

Արքունական Ճարտարապետ Մեծապատիւ Ազգատէր Պալեանց դերդաստանին ջանիւք շատ մի Ազգային որմնադիրք (Հոսանճը) յառաջեցին նոյն արուեստին մէջ ։ Բայց ընդհանրապէս Մայրաքաղաքիս Ազգայնոց պիտոյքն լեցունելոյ համար խիստ սակաւք են ։ Իսկ թէ Յոյն որմնադիրք որչափ դրամ կը վաստկին, որով իրենք կ'ապրին, և իրենց ընտանիքն ալ կ'ապրեցնեն, և դրամ ալ կ'աւելցնեն, այս ամենուն յայտնի է ։ Իսկ ընդհակառակն ողորմելի գործաւորքն մեր հացի սովով ու հացի կը շատանան, և իրենց ողորմելի ընտանեաց համար փոխանակադիր վճարելէն աչք չեն կարող բանալ, և պարտքի ներքեւ շարունակ կը հեծեն ։

Ազգային ճարտարապետաց անհրաժեշտ պարտքն է, որչափ կարելի է երիտասարդ գործաւորաց որմնադրութիւն սովրեցնել տալ, աշակերտ տալով ճարտար որմնադրաց ձեռաց ներքեւ. ինչպէս որ Յոյն որմնադիրք իրենց որդւոց, մերձաւորաց և ազգայնոց կը սովրեցնեն ։

## ԶԻԽՍՈՒՆՔ

Ազգային հիւսունքն ալ խիստ սակաւ են, և եղածն ալ նոյն Մեծապատիւ Պալեան ճարտարապետաց ջանիւքն յերևան եկած են ։ Ցոյնք այս շահաւոր արհեստն ըստ ամենայնի ձեռք բերած են իրենց ճարտար գործունէութեամբ, իրենց վաստակոյն տանուտէր եղած են. և իրենց ընտանեօքն հանգիստ ալ կ՚ապրին։ Ո՜ւր էր թէ մեք ալ մեր գաւառացի երիտասարդաց այս արհեստը սովրեցնէինք, և եղածն ալ գործածէինք այլոց քաջալերութիւն տալով։

---

## ԱՏԱՂՁԱԳՈՐԾ

Ազգային Ատաղձագործ (Տօղըմածը) քաղքիս մէջ ամեն թաղ բաւական կը գտնուին. քաջ և ճարտար են իրենց արհեստին մէջ ։ Սակայն այն է ողբալին, որ մերոցմէ շատերը օտար ազգաց կը դիմեն, և անոնց կը յանձնեն իրենց գործքն, անոնց կու տան իրենց դրամը։

Բայց մեր ատաղձագործաց մեծ պակասութիւնն ալ այն է, որ ինչպէս սովրեցան ըստ այնմ կը շարունակեն. ամենևին նորանոր փոփոխութեանց մտադիր չեն ։ Անոր համար իրենց արհեստն ալ օր աւուր տկարանալոյ վերայ է ։ Թէ որ իրենց բռնած ճանապարհն թող չտան, քիչ ժամանակէն այս արհեստն ալ մեր Ազգայնոց ձեռքէն բոլորովին պիտի յափշտակեն Ցոյնք և Եւրոպացիք ։ Պատճառն ալ յայտնի է. վասնզի քաղքիս առջի ոճը բոլորովին փոխուած է՝ նոր, փափկասուն և պճնասէր կենաց պատճառաւ ։ Անգամ մի այց ելիր Բերայի, Ղալաթիոյ և Պոլսոյ մէջ գտնուող նորաձև ատաղձագործաց (Մօրանկօզ) խանութներուն, ուր գիշեր

ցերեկ կ՚աշխատին և կը գործեն. կերպ կերպ նորանոր կարասիս կը շինեն, որոց եթէ մեր Ազգային արհեստաւորներն ալ քիչ մի աւելի աշխատին, կարող են նմանն գործել։

Ճարտարապետաց անհրաժեշտ պարտքն է այսպիսի ողորմելեաց ձեռք տալ, օգնել և ցուցանել։ Վասն զի նորաշէն տանց դրունք և պատուհանք իրենց առջի ձևին ու տեսակին մէջ չմնացին։ Առջի սովորական փայտէ դրունք և պատուհանք՝ ընտիր և ազնիւ փայտէ գործուածներու, տանց անշարժ դարանները և մառանները շարժուն զզրոցաց և հայելազարդ դարանաց փոխուեցան։ Ասկէ ետև մեր Ազգային ատաղձագործքն ինչ պիտի գործեն, քանի որ իրենց առջի ընթացքնին չեն փոխեր և չեն կատարելագործեր. և չեն նմանիր Յոյն և Եւրոպացի արհեստաւորաց ոճոյն և գործուածներուն։ Եւ այս ալ բնաւ չյաջողիր, թէ որ իրենք իրենց շաբթուն կամ ամսոյն մէջ չեն ժողովիր, միմեանց հետ չեն խորհրդակցիր, որով կարող ըլլան տեսնել և իմանալ իրենց պակասութիւնները. և իրենց արուեստը կատարելագործելուն կերպը մտածել։ Ամեն դժուարին գործ միութեամբ կը դիւրանայ։

---

## ԵՐԿԱԹԱԳՈՐԾՔ ԵՒ ԴԱՐԲԻՆՔ

Մայրաքաղաքիս մէջ գտնուող Ազգային Երկաթագործք (Տէմիրճի) և Դարբինք (Չիլինկիր) իրենց արուեստին մէջ բաւական յառաջադիմութիւն ցուցուցած են։ Ցաւ է որ ամեն Ազգայինք իրենց պիտոյքն անոնցմէ միայն առնուն, որով աւելի ևս քաջալերուէին և օր աւուր յառաջանային իրենց արուեստից մէջ։ Երկաթագործք և

Դարբինք կը պարտաւորին յԱզգային վաճառականաց գնել իրենց ալիւրը. իսկ վաճառականաց ալ պարտքն է փոքր ինչ նուազ գնով անոնց վաճառել: Արդեօք տարւոյն մէջ քանի հազար կենդինար երկաթ կը ծախուի:

Ազգային Երկաթագործք և Դարբինք պէտք է որ իրենց մէջ մասնաւոր ժողովք գումարեն, և ինչ որ պակասութիւն ունին արհեստներնուն մէջ, ուղղելու ջանան: Ահա մեր սահմանակից Յունաստանին Մայրաքաղաքին մէջ այլ և այլ գործարանք հաստատուած են, որոց մէջ գործիք մի ալ կայ, որ չարունակ ողորկ երկաթի քամեր ([illegible]) կը շինէ, զորս տակաւ տակաւ հոս մեր Մայրաքաղաքն կը յուղարկեն: Նոյն գործիքն հազիւ 50 կամ 60 լիրայի արժէք ունի: Ասոր նման անբաւ մանր մեքենաներ կան, որոցմով այլ և այլ ձեռագործներ և գործիքներ յերեւան ելանեն մեծ դիւրութեամբ և քիչ ծախքով:

Ինչու մեր Ազգայինք այսչափ դանդաղ են, այսչափ անկարող և այսչափ երկչոտ. չտեսի բնաւ անձ մի, որ համարձակի ինքիրեն ձեռնամուխ ըլլալ յայտնի օգտակար գործողութիւնս: Բայց կարող և հարուստ մարդ մի ալ չտեսի, որ անկարող և աղքատ արհեստաւորաց ձեռք տայ և օգնէ, որպէս զի քաջալերուին և օր ըստ օրէ յառաջանան: Ո՞ւր պիտի գանեն Երկաթագործք և Դարբինք այն Ազգասէր և բարերար Տասեանց դերդաստանն, մանաւանդ Բարեյիշատակ Յովհաննէս Պէյին պէս Անձ մի, որ ժողովեաց ամեն արհեստաւոր գործաւորներն Զէյթին-Պուռնուի արքունի մեծ գործարանին մէջ, զոր հրամանաւ Թագաւորին ինքն շինած էր: Հոն կրթեց զասոնք, և իրենց արհեստին մէջ յառաջացոյց, այնպէս որ երբ Ֆէթհի փաշային մահուանէ ետև Խալիլ Փաշայն արտաքսեաց զամենքն այն արքունի գործարանէն. դուրս ելլողները կարող

եղեն իրենց արհեստին հմտութեամբ ապրիլ։ Ցիշատակն այսպիսի Ազգասէր Բարերարաց՝ միշտ օրհնութեամբ եղիցի։

---

## ՔԱՐԱԿՈՓՔ ԵՒ ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾՔ

Քարակոփութիւնն գեղեցիկ արուեստ մի է։ Ցաւալի է որ Ազգային քարակոփք (Թաշճը) խիստ սակաւ են։ Ազգային ճարտարապետաց պարտքն է, որ ասոնց սովրեցնեն իրենց արուեստին ոճը, չափը, գիրքն ու վայելուչ համեմատութիւնը։ Յոյնք և Եւրոպացիք այս արուեստն ալ յափշտակած են իրենց ճարտար և գործունեայ ընթացքով։

Ազգային վարպետ քարակոփներէ լոմ ծանօթներս են յՕրթագիւղ Յ. Վարդանեան Բարսեղ, և ի Պէշիկթաշ Յ. Նշանեան Յակոբ, որք իրենց ջանիւք և աշխատութեամբ բաւական յառաջացած են, ինչպէս կը վկայեն իրենց կենդանի ճարտարարուեստ քանդակներն։

Ազգայինք իրենց պիտոյքն փոխանակ Յունաց ու Եւրոպացւոց շինել տալոյն կը պարտաւորին ասոնց շինել տալ։ Եւ շատ մի ալ Ազգային երիտասարդներ իրենց քով յաշակերտութիւն տալ, որք քիչ ժամանակի մէջ այն վարպետներէն վարժուելով և քաջալերուելով ծաղկին, յառաջանան և շատ մի ալ քաջ և ճարտար Քանդակագործք յերևան գան։ Ո՞ւր են այսպիսի ազգօգուտ գործողութեանց մտածողք։

Գում-Գափու, ինչպէս ուրիշ թաղերն ալ, շատ մի հետարայի Յոյնք շարունակ քարագործութեան արուեստին զբաղելով իրենց ապրուստն կը ճարեն. հոն տեղուանք բաւական Հայազգի ընտանիք ալ կան, ինչո՞ւ իրենց որդւոց այս օգտակար արուեստը չեն սովրեցներ։

## ՈՐՄԱԾԵՓՔ

Ազգային որմածեփքն (Սըվ-ճը) խիստ քիչուոր են, և իրենց արուեստին մէջ տկար ։ Եւրոպացի որմածեփքն աւելի յաջողակ և կատարելագործ են . և ամեն մարդ կամի որ անոնք ծեփեն իրենց տան պատերն. վասն այսորիկ այս արուեստին շահ ու վաստակն ալ օտարականք յափշտակած են ըստ մեծի մասին։

Պէտք է որ մեր Ազգայինք ալ ջանան կատարելագործել իրենց արհեստը ։ Ճարտարապետաց մերոց են անհրաժեշտ պարտք է որմածեփաց թերութիւնները իրենց ցուցանել և ուղղել, և արհեստին կատարելութիւնն ուսուցանել, և հետզհետէ իրենց յաջորդները պատրաստելու ջանալ ։

## ՆԵՐԿԱԳՈՐԾՔ

Գրեթէ ամենևին չկայ Ազգային ներկագործ (Պօյ-ճը) մի։ Իսկ թէ քաղաքիս մէջ որչափ մեծ է այս արհեստին գործածութիւնն, շահն և օգուտն. շատ է անգամ մի ի Ղալաթիա Հրէից և Յունաց ներկագործի նիւթոց կրպակներն աչքէ անցնել, և կամ թէ մաքսատանէն իմանալ՝ թէ ամեն տարի որչափ ներկագործի նիւթք և քանի՞ հազար տակառ իւղք կը հասանին նաւերով։

Եւրոպիոյ Ազգային վաճառականքն մեր՝ չե՞ն կարող արդեօք այս ապրանքին ալ վաճառականութիւնը իրենց ձեռքին անցունել, տեղացի հաւատարիմ Ազգայնոց հետ ընկերութիւնս հաստատել, և պատճառ ըլլալ քանի մի ընտանեաց ապրուստ ճարելոյ ։

## ՆԿԱՐԱԿԵՐՏՔ

Գեղեցիկ արուեստից մին ալ Նկարակերտութիւնն է (Նաքքաշ): Բայց ափսոս որ հազիւ քանի մի հատ Ազգա-յինք կը գտնուին. որոց մէջ գլխաւոր և անուանին է Յ. Համբարձում Մինասեան, որ իւր բնական ճարտար և կենդանի նկարօք Ազգիս քիչ պատիւ չընէր: Բայց այս մօտ ժամանակ Իտալացիք և Գաղղիացիք քաջք և գերազանցեալ ի նկարակերտութեան յափշտակեցին այս արհեստն իրեն ամեն շահովն ու վաստակով ի միասին: Այս օգտակար արուեստը կատարելագործելոյ համար քանի մի աշակերտս յԵւրոպա յուղարկելու է. աշա-կերտները շատցունելու է, որք ապագային մէջ կարե-նան օր աւուր յառաջել, և իրենց ընտանեաց ապրուստ ճարել:

Ազգս միշտ պարտական է յայտնել իւր շնորհակա-լութիւնն Մեծապատիւ Տիւզեան Յովհաննէս Պէյին և Մեծապատիւ Երամեան Կարապետ Պէյին, որք իրենց բնատուր ազգասիրութենէ շարժեալ քանի մի Ազգային պատանիս իրենց ծախուքն յուղարկեցին յԵւրոպա, ուր ուսան այլ և այլ արհեստս և երբ դարձան իրենց ընտանեաց ապրելոյն պատճառ եղեն:

Իցէ թէ մեր Ազգային բոլոր Մեծատունքն ալ ասոնց օրինակին հետեւէին, և իրենց հաճոյից միայն վատնած գումարէն մաս մի նուիրէին աղքատ ընտանեաց վե-րըստին կենդանութեան պատճառ լինելոյ:

---

## ԱՊԱԿԵՎԱՃԱՌՔ

Ընդհանրապէս ապակեվաճառութիւնն (Ճամճը) ալ Հրէայք իրենց սեփհականած են: Այլ թէ որչափ մեծ

է այս վաճառքին տուրևառը, ամեն մարդ կարող է մակաբերել, միայն թէ աչք մի նետէ՝ թէ ամեն տարի որչափ տուն և խանութ կը շինուի, և թէ ամեն տուն տարւոյն մէջ քանի՞ պատուհանաց ապակիներն կը նորոգուին։ Մաքսատունէն առօրդն կ՚իմացուի։ Ափսոս որ և ոչ Ազգային մի այս վաճառին ձեռք դրած է։ Արդեօք յեւրոպա Ազգային վաճառական չունի՞մք. ինչու այս ապրանքին ձեռք զարկած չեն. որով քանի մի ընտանեաց ապրելոյն պատճառ ըլլային, թէ՛ լինենք շահէին և թէ խամուլթայանքն։

Այլ ընդհանրապէս անհատից, և մանաւանդ ճարտարապետաց անհրաժեշտ պարագն է, այս նիւթն ալ յԱզգային վաճառականաց գնել, երբ Ազգային վաճառականք խղճիւ և ճշդութեամբ իրենց յաճախորդները գոհացնեն։

---

## ՄԱՆՐԱՎԱՃԱՌՔ

Մանրավաճառք (Խուրդավաճիք) ամեն արհեստաւորաց վերաբերեալ գործիքներ պատրաստ յեւրոպայէն բերել կու տան. ինչպէս Հիւսան, Ատաղձագործի, Դարբնի և նաև սան մի հարկաւոր եղած երկաթէ և պղնձէ դրանց բանալիքներ, պատուհանաց երկաթներ և ուրիշ ամեն կերպ մանր պիտոյքներ։ Մօտ ժամանակ այս կերպ Ազգային վաճառականք բաւական յերևան ելին։ Շատ է որ Ազգն սանցմէ միայն իրեն պիտոյքը հոգայ. փոխանակ օտարաց քսակն լեցունելոյ, և փոփոխակի վաճառականքն ալ համեստ և չափաւոր գնով անոնց վաճառեն. քանզի յառաւելութենէ տուրևառութեան վաճառայն շահն կրկնապատկի, և երբ տէրութեան գործարանաց հետ յարաբերութիւն ունենան, շահն ալ աւելի կը մեծնայ։

կը թողում իշխանաց վերայ խօսիլը․ անոնք ալ իրենց ծանրակշռութիւնն ունին․ ճարտարապետքն լաւ գիտեն՝ թէ անոնց որչափ դրամ կուտան շինութեան առեն աւելորդ փլատակները, հողերը և զանազան պիտոյքը կրելու ։ Նոյնպէս զանց կ՚ընեմ հոր բացողներուն վերայ ալ առանձինն խօսիլ ։

Ասոնք են ճարտարապետին պէտք ունեցած արհեստաւորաց ցուցակը, և անոնց վերայ առանձին առանձին տրուած տեղեկութիւնքն ։ Այլ թէ Ազգայինք ամեն տարի այդ արհեստաւորաց որչափ դրամ կը վճարեն արդեօք․ ասոր վերայ, ինչպէս ըսի, ստոյգ և որոշ բան մի չեմ կրնար դրել ։

Միայն սա կրնամ ըսել՝ թէ երեսուն հազար Ազգային ընտանեաց իւրաքանչիւրը տարւոյն մէջ իրենց տանց և կրպակաց և ուրիշ կալուածոց մանր շինութեանց և նորոգութեանց համար հարկաւ ոսկի մի ծախս կ՚ընէ և ըստ այսմ առ նուազն 30,000 ոսկի վճարելուն ամենեւին երկբայութիւն չկայ ։

Այս հաշւոյն վերայ աւելցուր գոնէ 70,000 ոսկի ալ տարւոյն մէջ ի հիմանց սկսած նորոգ Ազգային շինութեանց, ինչպէս տանց, կրպակաց, վաճառանոցաց և պարտիզաց և այլն ։ Որով ընդ ամենն առ նուազն 100,000 ոսկւոյն կը հասնի գումարն ։

18.

# ՏԱՆ ԿԱՐԱՍԻ ԵՒ ԿԱՐԵՒՈՐ ԶԱՐԴ

Տուն մի զարդարելոյ համար հարկաւորներն են, փսիաթ, դօրգ, դլանց և պատուհանից վարագոյրք, նստարաններ և բազմոցներ, աթոռներ և թիկնաթոռներ և բազկաթոռներ, հայելիներ, գզրոցներ, լուացա-

րաններ, մեծ դարաններ, մահճակալներ, կանթեղներ։ և աշտանակներ, և ուրիշ շատ մի կարասիք։ Այս կերպ ապրանքով և վաճառքով Պոլսոյ, Ղալաթիոյ և Բերայի կրպակքն լի են։ Այց ել, տե՛ս անգամ մի քանի՞ Ազգային կրնաս գանել որ այս տեսակ ապրանքներ վաճառէ։ Քանի մի հատին խօսքն չըլլար։

Այլ թէ ամեն տարի մեր Ազգայինք իրենց տանց կարասեաց և զարդուց համար ո՞րչափ դրամ կը հատուցանեն և օտարաց քսակն կը լեցունեն, առոր համար ստոյգ բան մի չեմ կրնար զրուցել, ամեն մարդ և ամեն ընտանիք փորձով գիտեն զայն։ Սա միայն կրնամ ըսել որ մեր Ազգը տարւոյն մէջ առ նուազն 120,000 ոսկի կը վճարէ, եթէ երեսուն հազար ընտանեաց իւրաքանչիւրը մին միւսոյն վերայ 400 դահեկան վճարէ իրեն տան կարասեաց և զարդուց համար։

Իսկ թէ որ քանի մի անձինք համարձակին ընկերութեամբ և Ազգային վաճառականաց ձեռնտուութեամբ տան մի վերաբերեալ կահ և կարասիքն վաճառելոյ, նախ Ազգայինք կը պարտաւորին գնել, մանաւանդ երբոր տեսնեն՝ թէ այլոց ծախածէն աւելի դիւրագին են ասոնց վաճառքը։

## 19.

## ՅԱԽՃԱՊԱԿԵԱՑ ԵՒ ԱՊԱԿԵԱՑ ՍՊԱՍՔ.

Թէ որ տան գլուխ տարւոյն մէջ կոտորուածոց տեղ երկոտասան պնակ, երկոտասան դաւաթ, և շիշ մի ջրոյ, և քանի մի ալ կանթեղաց ապակիներն ալ հաշուեմք, ասոնց համար ութսուն արծաթի դահեկան հարկաւ կը վճարուի։ Ըստ այսմ երեսուն հազար ընտանեաց քսան

և չորս հազար ոսկի. և յիսուն հազար գաւառացւոց համար ալ՝ վեց հազար ոսկի դիր, ընդ ամենն 30,000 ոսկի ամեն տարի կը տրուի ։

Արդեօք Անգղիոյ, Գաղղիոյ և այլոց տեղեաց Ազգային վաճառականք չե՞ն կարող Պօլսեցի Ազգայնոց հետ ընկերութիւնս հաստատել այս շահավաճառն ձեռք ձգելոյ, և առանձին նշանագրոշմով ապրանք մէջտեղ յերեւան հանել, որով քանի մի ընտանիք ալ կարող ըլլան ապրիլ։

## 20.

## ԿԱՀԱԶԱՐԴ

Առջի ժամանակ Մայրաքաղաքիս մէջ կահազարդք (Դօշէմէճի), այսինքն կահ կարասիքն զետեղող և զարդարող արհեստաւորք գրեթէ բոլորն ալ Մահմետականք էին և մեծ շահ կը քաշէին։ Մօտ ժամանակ Եւրոպացիք (Թափիսիէ անուամբ) նոյն գործին ձեռք զարկին ։ Թէպէտեւ ճշմարիտն զրուցեմք, վերջինքն առջինները շատ գերազանցեցին իրենց արուեստին մէջ, և առաջինքն ալ իրենց ճարպկութեամբ մօտ ժամանակս անոնցմէ վար չմնացին։

Այս արհեստաւորն ամեն ընտանեաց տան մէջ կը մանէ, ամեն գաւառականք աոր պէտք ունին, անկողնոց, վերմակաց, բարձից, վարագուրից, նստարանաց, աթոռոց, գորգոց, շինութեան, նորոգութեան և զետեղման համար ։

Եթէ երեսուն հազար Հայազգի ընտանիքէն քան հազարն տարւոյն մէջ իւրաքանչիւրն հարիւր արծաթի դահեկան կահազարդաց հատուցանէ գնուած բամբակն և բուրդն միատեղ հաշուելով քան հազար ոսկւոյն կը հասնի։ Տասն հազար ոսկի ալ յիսուն հազար գաւա-

*ուսցուց համար վերան աւելցուր, պատրաստ անկողին բարձ, վերմակաց համար. ըստ այսմ տարւոյն մէջ տասարագդի կահաղորդաց 30,000 ոսկի կը վճարեմք ։*

*Ամօ՜թ մեզի, որ Ազգային կահաղարդ մի չունիմք. խսկ թէ որ գտնուին ալ երեմնին չեմք նայիր, չեմք յարդեր, ձեռք չեմք տար, չեմք օգներ, չեմք քաջալերեր. ի՞նչպէս ուրեմն ողորմելիքն կարենան յառաջել իրենց արուեստին մէջ ։*

## 21.

## ՊՂՆՁԵՂԷՆՔ

*Մայրաքաղաքիս մէջ Ազգային մարդ մի չկայ, որ այս ամենակարեւոր նիւթոց չինութեան արհեստին ([illegible]) ծառայէ ։ Իւրաքանչիւր ընտանիք պէտս ունի սանից, կաթսայից և ուրիշ գործեաց խոհակերոցին, թէ որ ամեն ընտանիք տարւոյն մէջ իւրաքանչիւրէն հատ մի գնելոյ ըլլան, առ նուազն արծաթի հարիւր դահեկանս պարտին վճարել ։ Եւ ահա երեսուն հազար ընտանեաց և յիսուն հազար գաւառականքն ալ միատեղ առնլով տարւոյն մէջ 45,000 ոսկի կը վճարուի ։ Բայց արդեամբ իւրաքանչիւր ընտանիք պղնձեայ անօթից համար ո՞րչափ ոսկի վճարած են արդեօք ։*

*Իւրաքանչիւր ընտանեաց իրենց հարկաւոր եղած պղնձեայ անօթները նորոգ գնելոյ համար առ նուազն հինգ հազար դահեկան պէտք է ։ Երեսուն հազար ընտանիք և գաւառացի 150,000 ոսկիէն աւելի վճարած են առաջին անգամ տուն տեղ ըլլալու ժամանակ, և այս գումարէն խիստ եւելօք վճարած են շատ մը հրդեհից պատճառաւ ։*

*Ձանց առնեմ հօս՝ թէ Ազգայինք տարւոյն մէջ ո՞րչափ*

արդեօք ոսկի կը վճարեն Եւրոպայէն եկած պատրաստ անօթից՝ տան և խոհակերոցին պիտոյքը լեցնելու համար, այսինքն աման, կաթսայ, կասկարայ, ունելիք, եւայլն. եւայլն ։ Թո՛ղ ընթերցողք ինքնին հաշիւ մի ընելով՝ աւելցնեն վերի տարեկան գումարին վրայ ։

## 22.

## Ա Ն Ա Գ

Մայրաքաղաքիս մէջ որչափ Ազգային ընտանիք կան, և որչափ գաւառականք կան, ինչպէս որ վերը գրուցեր ենք, պարտին տարին անգամ մի գոնէ հարկաւ իրենց ամանները, կաթսաները, կուժերը և բոլոր պղնձեղէնները կլայեկել (քալայլամագ) ։ Եթէ տան գլուխ առնուազն հինգ կտոր պղինձ անօթեր տան, երեսուն հազար ընտանեաց համար հարիւր յիսուն հազար կտոր կ'ընէ ։ Քսան հազար կտոր ալ գաւառացւոց համար վրան աւելցուր, ընդամենն հարիւր եօթանասուն հազարի կը հասնի ։

Իւրաքանչիւր կտորը կլայեկելու համար արծաթի դահեկանի մի հաշուեմք, տարին 17,000 ոսկի կ'ընէ ։

Ազգային անագագործ ամենեւին չունիմք, և դժուարին արհեստ մի ալ չէ ։ Մեղք չէ՞ որ այսչափ ոսկին օտարաց ձեռքին կը լեցնեմք ։ Այո՛, օտարաց համար ԳՈՐԾ ԿԱՅ, այլ Ազգային ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ ։

Ամեն տարի որչափ կենդինար արդեօք անագ կուգայ Եւրոպայէն՝ թէ այս Մայրաքաղաքիս և թէ բովանդակ Օսմանեան պետութեան պիտոյից համար . և թէ զանոնք գնելու համար քանի՞ հազարաւոր ոսկի կը վճարուի . հարցուր մեր վաճառականաց անոնք կարող են քեզի հաշիւը ցուցանել ։

## 23.

# ԺԱՄԱՑՈՅՑ

Ամեն մարդուն ծոցը՝ թէ այր ըլլայ և թէ կին, ծառայ կամ աղախին ժամացոյց մի կայ. երկու հարիւր յիսուն հազար Ազգայիններէն անշուշտ առ նուազն հարիւր հազար Ազգայինք ժամացոյց կը գործածեն ։ Ջանց կ'ընեմ Ազգային տանց մէջ հազարաւոր հաստատուն ժամացուցից համար հատուցուած բիւրաւոր ոսկին։

Եթէ միայն գործածուած ժամացուցից նորոգութեան համար մարդ գլուխ քսան արծաթի դահեկան վճարուի, տարւոյն մէջ քսան հազար ոսկի Ազգս կը վճարէ։ Նորոգ գնուած ժամացուցից համար այս գումարին վերայ դիր երեսուն հազար ոսկի ալ, ընդամենն լինի 50,000 ոսկի ։

Մեղադրանաց արժանի են Ազգայինք, որք մեր Ազգային ճարտար և քաջ ժամագործներն ի մի կողմն թողլով օտարաց ձեռքին կը լեցնեն իրենց հազարաւոր ոսկիները ։ Ազգայինք պէտք է ջանան որ քաջ և ճարտար ժամագործաց խանութներ բանան անդ, ուր Ազգայինք կը բնակին, և աշակերտս տան անոնց քով, որպէս զի հետզհետէ իրենց յաջորդս հասցնեն։

## 24.

# ՄԵՂՐԱՄՈՄ ԵՒ ՃԱՐՊԱՄՈՄ

Մայրաքաղաքիս մէջ շատ մի Հայածէս Եկեղեցիս ունիմք, որոց թիւը Այիստէֆանոսէն սկսեալ մինչեւ Սեւ ծովուն բերան յիսուն և չորսի կը հասնի։ Այս ամեն Եկեղեցիք շարունակ մեղրամոմով կը լուսաւորուին ։

Արդ՝ եթէ Եկեղեցեաց և եթէ Հարուստներոց, Մկըրտութեանց և Ցուղարկաւորութեանց համար տարւոյն մէջ առ նուազն հինգ հազար քաշ մեղրամոմ կ՚սպառի։ Մէն մի քաշ յիսուն արծաթի դահեկանէն 2,500 ոսկի լիրայի գումար մի կուտայ, որ ամեն տարի կը վճարուի։

Ուրախութեամբ լսած եմ՝ թէ յԵտի Գուլէ Ազգային Հիւանդանոցին մէջ կարգաւորեալ մեղրամոմի գործարան մի կայ. և թէ անոր շահը ի պէտս Հիւանդանոցին կապուած է։ Երանի՛ որ գործակից ըլլան այսպիսի օգտակար գործողութեան։

Տուն չկայ, խանութ չկայ, մինչև Եկեղեցեաց մէջ անգամ Սքարմաչէթը ըսուած ճարպէ մոմ չգործածեն։ Արդ՝ մեք երեսուն հազար Ազգային ընտանեաց իւրաքանչիւրին համար վեր ի վերոյ տարւոյն մէջ երեք քաշ Սքարմաչէթ հաշուելով իննսուն հազար քաշի կը հանի։ Այս գումարին վրայ աւելցուր վաթսուն հազար քաշ ալ վասն գործածութեան Եկեղեցեաց, Աղքատանոցաց, Հիւանդանոցաց և այլ Հասարակաց տեղեաց և գաւառականաց, ընդ ամենն հարիւր յիսուն հազար քաշ Սքարմաչէթի կարօտութիւն ունիմք։ Մէն մի քաշն տասն և հինգ դահեկանաւ բազմապատկելով 22,500 ոսկի լիրա ամեն տարի Պոլսեցիք կը վճարեն ճարպէ մոմին համար. բայց ըստ իս շատ աւելի է։

Ո՞ւր էր և ո՜րչափ փափագելի արդեօք. եթէ քանի մի անձինք միանալով և ընկերանալով ճարպամոմի գործարան մի կանգնէին, որով անգործ մարդիկ ալ գործ գտնէին։

## 25.

# ՎԻՄԱՁԷԹ

*Եթէ երեսուն հազար Հայազգի ընտանեաց իւրա-քանչիւրին համար տարւոյն մէջ վեր ի վերոյ վեց վեց մետուկ վիմաձէթ (կազ) գնեմք, հարիւր ութսուն հա-զարի կը հանի գումարը ։ Քսան հազար ալ աւելցուր գաւառայնոց համար, ընդ ամենն երկու հարիւր հազար արկղ վիմաձիթոյ կարօտ եմք ։ Իւրաքանչիւր արկղ քառասուն արծաթի դահեկանաւ հաշուեմք, վճար-ուած դրամը* 80,000 *ոսկի լիրայի կը հանի ։*

*Այս առուտուրէն ալ Ազգայնոց ամենեւին շահ մը չկայ։ Արդեօք Անգղիոյ Ազգային վաճառականք մեր չե՞ն կարող բաժանորդական ընկերութիւն մի կազմելով առանձին մասնաւոր նշանով մի արկեղաց վերոյ դրոշ-մուած նոյն վաճառքն հոս յուղարկեն, որով քանի մի ընտանիք և քանի մի երիտասարդք ապրուստ և գործ գտնեն ։ Մայրաքաղաքիս մէջ ո՞րչափ այսպիսի շահաւոր* ԳՈՐԾ ԿԱՅ, *բայց ո՞ւր են* ԳՈՐԾՈՂՔ ։

## 26.

# ՀՐԱՀԱՆ ԿԱՄ ԼՈՒՑԿԻ

*Կրակ հանելու լուցկին (كبريت) իրաւցնէ մարդոյն բան մի չերեւիր, այլ թէ որչա՞փ շահաւոր և մեծ գոր-ծածութեան մէջն է՝ ամեն մարդ կը վկայէ . վասն զի ամեն տուն, ամեն սենեակ, ամեն խանութ, վերջապէս ամեն տեղ, ամեն օր, ամեն վայրկեան գիշեր և ցերեկ միշտ շարունակ գործածութեան և սպառման վրայ է։*

Օրն ի բուն հազարաւոր լուցկիներու տուփեր կը սպառ-ուին ։ Տասն, քսան, քառասուն փարան մարդոյն շատ մեծ բան մը չերևիր. բայց թէ որ մարդ մը կարող ըլ-լայ վեր ի վերոյ հաշիւ բռնել. այն ժամանակ յայտնի կը տեսնէ տարւոյն մէջ որչափ ոսկիներ հատուցուիլը։

Լեհացիք ատենօք ընկերութիւն մը հաստատեցին իրենց ողորմելի Ազգայնոց օգնութեան հասանե-լոյ համար. և լուցկեաց գործարան մը շինեցին. և տուփերուն վրայ առանձին նշանով սկսան տալ և անոր վաճառել, չէ թէ միայն Ազգայնոց, հապա՝ օտար Ազգաց ալ. և ասկէ շատ մեծ օգուտ ելև իրենց։ Մեք ինչո՞ւ չկարենամք ընել. արդեօք Ազգային քիմիագործ չունի՞մք. ինչո՞ւ ասոր համար ընկերութիւն մը չսահ-մանեմք, և գործարան մը չհաստատեմք. և բովան-դակ հասարակութեան անգործ մարդկան ձեռօք առանձին դրոշմով կամ նշանաւ մը չվաճառեմք ։ Եթէ միայն երեսուն հազար քաղաքացի ընտանեաց գլուխ վրայի վրայ երեսուն արծաթի դահեկան հաշուեմք, տարւոյն մէջ 10,000 ոսկւոյն մօտ շարունակ Ազգս կը հատուցանէ հրահաններու համար ։ Թո՛ղ յիսուն հա-զար գաւառացին ։

Ո՞ւր են այսպիսի ազգօգուտ գործողութիւնս մտա-ծողք և ձեռնարկողք ։ Աւա՜ղ մեր դանդաղութեան և անգործունէութեան ։

27.

# ՕՃԱՌ

Երկու հարիւր յիսուն հազար անձանց ամեն օր լուացուելոյ, և ճերմակեղինաց մաքրութեան համար օճառ պէտք է ։ Եթէ վրայի վրայ մարդ գլուխ տար-

ւոյն մէջ չորս քաշ օճառ հաշուեմք, միլիոն մը քաշ օճառի պէտք կայ. իւրաքանչիւր քաշը հինգ արծաթի դահեկանաւ բազմապատկեմք, ելած գումարն 50,000 ոսկւոյն կը հասնի։ Զանց կընեմ Եւրոպական օճառաց համար վճարուած ոսկիները։ Ազգային օճառ ծախող վաճառական մը ամենեւին չկայ։ Արդեօք այսչափ դժուարին գործ մի է. ահա Կրետացիք, Արաբացիք յաջողեցան զանազան օճառի գործարանս հաստատել. և բովանդակ Տաճկաստանին մէջ իրենց ապրանքը առանձին դրոշմով վաճառել, և զոսկիս ժողովել։

Այս կերպ ձեռնարկութիւնք մեծ դրամագլխոյ կարօտ չէ. մեծամեծ գործարանի ալ պէտք չունի։

ԳՈՐԾ ԿԱՅ, ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ։ (*)

## 28.

## ԱԾՈՒԽ ԵՒ ՓԱՅՏ

Թէ որ երկու հարիւր յիսուն հազար Ազգայնոց իւրաքանչիւրին տարւոյն մէջ հարիւր քաշ ածուխ հաշուելոյ ըլլամք, քսան և հինգ միլիոն քաշ ածխոյ պէտս ունին։

Ենթադրելով որ ամեն հարիւր քաշ ածխոյ համար առ նուազն քառասուն արծաթի դահեկան վճարեն, տարւոյն մէջ Ազգայինք տասն միլիոն դահեկան, այսինքն 100,000 ոսկի լիրա անշուշտ պիտի վճարեն։ Թերեւս շատ աւելի։

Նմանապէս վեր ի վերոյ հաշուելով Մայրաքաղաքիս

---

(*) Տես Մխիթարեան Քաջունւոյ Հ. Մանուէլ Վարդապետին յօրինած Արուեստաբանութեան Գիրքն։

բոլոր Ազգայինք տարւոյն մէջ առ նուազն երեք հար-իւր հազար քէսէ փոխոյի կորուստ են, որոց իւրաքանչիւ-րին համար քսան արծաթի դահեկան վճարելով, ամեն տարի 60,000 ոսկի պիտի հատուցանեն։

Բայց Ազգս ամեն տարի ածխոյ և փայտի համար ասկէց շատ աւելի դրամ կը վճարէ. և այսքան հազա-րաւոր ոսկիներէն իրեն ամենևին շահ մի ալ չկայ։ Ո՞ւր են մասնաւոր ընկերութիւնք, որք ամեն թաղ ածխոյ և փայտի մթերանոցս շինեն. ընտիր տեսակներէն ի ժամանակին հոն պատրաստեն. և տասն առ հարիւր շահով Ազգայնոց վաճառելով գոհ ըլլան. Քանի՜ քանի՜ ընտանիք օրդեօք, և ո՞րչափ դատարկաշրջիկք գործ գտնելով օրական ապրուստնին կը ճարէին։ Թո՛ղ իրենց ձեռքի ներքև աշխատողներն և բեռնակիրներն։

Ածուխ ծախել անարգ գործ մի չէ. անարգ գործ այն է, որով մարդոյն յարգն ու պատիւը կ'արատի. և որով ոք խղճմտանաց դէմ կը գործէ և կը մեղանչէ ։

## 29.

## ՏԱՆՑ ՎԱՐՁՔ ԵՒ ՏՈՒՐՔ

Վեր ի վերոյ հաշուելով բովանդակ Ազգայնոց տա-րեկան վճարած վարձք և տուրքն վասն տանց և կըր-պակաց տարւոյն մէջ 40,000 ոսկիէն շատ աւելի է կըսեն ։ Քսան երեսուն տարի առաջ Ազգայինք ո՞րչափ տանց, կրպակաց, խանութից տէր էին, այսօր երրորդ-մասը հազիւ մնացած է, Թո՛ղ քաղքիս ուրիշ թաղերը՝ ես միայն սա գիտեմ, որ ի Ղալաթիա և ի Բերա Տէօրթ Եօլ-աղըլին և Մեծ փողոցին վրայ շատ մի մեծամեծ Ազգայնոց տունք կային. տարւոյ ի տարի մի առ մի զամենեքն ալ ծախեցին, ոմանք դիրքը և օդը աղէկ է

ընելով, ինքզինքնին խաբելով մի և երկու ժամ հեռի վերի կողմը դային, լեռներուն վերայ խրճիթի նման իրենց տնակներ շինեցին։ Եւ շատերն ալ նոյն տեղուանք վարձաւորութեան պարտաւորեցան ։

Ահա թշուառ հետևանք տգիտութեան Ազգայնոց ի մասին Տնտեսական գիտութեան և քաղաքականութեան։

## 30.

## ԾՈՒԽ ԵՒ ԾԽԱԹՈՒՂԹ

Մերայինք սովորաբար երբոր բան գործ չունին, ժամանակնին պարապ անցնելոյ համար չարունակ ծուխ ծխելոյ վերայ են։ Հիմա որ ամեն արհեստ, գործ և ձեռագործ դրեթէ դադրած են, ազգայինքն առ հասարակ արք և կանայք, և ամաչեմ գրել, աղջկունք և աղախինք և տղայք անգամ վարժուեցան չարունակ ծխելոյ ։

Երկու հարիւր յիսուն հազար Ազգայիններէն ի բաց առ յիսուն հազար անձինս, անշուշտ մնացած երկու հարիւր հազար անձինք ամեն օր չարունակ կը ծխեն ։ Արդ՝ մարդ գլուխ թէ ծխոյ և թէ գլանիկ շինելու ծխաթղթոյն համար վեր ի վերոյ. օրական ողջ սակ յիսուն փարա դնեմք, ամեն օր 2500 ոսկի կը վճարուի. իսկ տարւոյն մէջ 900,000 ոսկի Ազգս իր քսակէն կը հանէ և կը հատուցանէ ծուխն ու մուխը գնելոյ և փչելոյ համար ։

Երանի՜ թէ այսչափ հազարաւոր ոսկեաց շրջանը մեր Ազգայնոց ձեռօքն պտոյտ առնոյր, այն ժամանակ քանի՜ քանի ընտանիք պիտի ապրէին ։ Բայց ո՞ւր են Ազգային ծխավաճառք. բիւրք բիւրոց խանութք բացուած են բովանդակ Մայրաքաղաքիս չորս կողմն .

*մնտաւէ՛ նոյն՝ քանի ազգայնոց խանութս կը տեսնես ։ Դարձեալ կ'ըսեմ, Թաղականաց պարտքն է ձեռք տալ, անգործ մարդոց, օգնել. և տեղ տեղ Ազգային կըր-պակներ բանալ տալ, և ըստ տեսակին կարելի եղածին չափ աժան ծախելով յաճախորդս վաստկելու ջանալ։*

## 31.

## ՍԱՓՐԻՋՔ ԵՒ ՎԱՐՍԱՎԻՐԱՑՔ

*Քսան, երեսուն տարի առաջ շատ մի Ազգային սափ-րիչք (Պէրպէր) կային ։ Խանութի և տան Տէրք էին. հանգիստ կ'ապրէին ։ Սափրիչի խանութ մի բաւական էր երկու և երեք ընտանիք կերակրել իրենց վիճակին համեմատ. վարպետն՝ իրեն երկրորդն՝ աշակերտն և ծառայն ։*

*Թէպէտև սափրչութիւնն նոյն է այսօր ալ, բայց եղանակն և տարազն փոխուելոյն պատճառաւ շատ մի Ազգային սափրիչք դրեթէ բոլորովին թողուցին իրենց արհեստը ։ Չուզեցին զիրենք յարմարցնել ժամանակիս փոփոխութեան. վասն այսորիկ իրենց տեղ Յոյնք և Եւրոպացիք յաջորդեցին ։*

*Կը տեսնե՞ս ինչպէս Ազգս օր աւուր աղքատանալոյ վերայ է. որովհետև արհեստաւորք քանի որ յառաջ կերթան, այնչափ կը պակսին ։*

*Արդ՝ սեպենք որ հարիւր հազար մարդկանէ յի-սուն հազարը ի բաց առնլով, (որոնք կամ ինքիրենց կ'ածիլուին, և կամ աղքատ են և քիչ կամ ոչինչ դրամ կը վճարեն), Մնացած յիսուն հազար Ազգայինք գոնէ շաբթուան մէջ անգամ մի կ'ածլուին, և քանի մի շա-բաթու մէջ ալ մազերնին կտրել կամ չիտկել կու տան. եթէ վրայի վերայ մարդ գլուխ երեք արծաթ դահեկան*

գինեյն ըլլալը, խաղաքանչիւր շաբաթու մէջ հազար հինգ հարիւր ոսկի կը վճարեն. չորս շաբաթուն մէջ վեց հազար ոսկի, և տարւոյն մէջ 72,000 ոսկի կը վճարէ Ազգս Սափրչաց, կամանց մազերու յարդարմանց ծախքերն ալ հաշւոյս մէջ չեմք անցներ։

Քանի՛ բնատնիք պիտի ապրէին արդեօք, եթէ Ազգայինք այս տուրեւառին մէջ շարունակէին, ու իրենց յաճախորդս չանէին։ ԳՈՐԾ ԿԱՑ և կայ. բայց ԳՈՐԾՈՂՍ չեմք գտնար։

## 32.

## ԲԺԻՇԿՔ

Այսօրուան օրս Ազգային ճարտար և քաջ բժշկաց բազմութիւնը քիչ պատիւ և փառք չեն Ազգին։ Սակայն Ազգայնոց պարտք և պատիւն է, որ օտարազգի բժըշկաց չյաճախեն. մանաւանդ զի բնականապէս Ազգային բժիշկք իրենց Ազգայինները աւելի կը սիրեն, և աւելի սրտի մտօք կը խնամեն և կը դարմանեն։

Ենթադրեմք որ երկու հարիւր յիսուն հազար Ազգային բնակիչք մարդ գլուխ վեր ի վերոյ տարւոյն մէջ Բժշկաց քառասուն արծաթի դահեկան վճարեն, ահա 100,000 ոսկին Ազգին քսակին մէջ կը մնար. թէ որ Ազգայինք նախանձաւոր ըլլային նոյն ոսկիները մեր Ազգային Բժշկաց տալու։

Բայց Ազգային բժշկաց ալ պարտքն է Ազգային դեղավաճառաց հետ հաղորդակցութիւն ունենալ, գոնէ անոնց հետ որ մօտակայ տեղեաց մէջ գտնուին։

Ազգային ամեն բժշկաց մասնաւոր շնորհս մատուցանել պէտք է շատ մի աղքատաց ձրի և յօժարութեամբ մարդասիրական խնամք ցուցնելնուն համար։

## 33.

# ԴԵՂՕՐԱՅՔ

*Առջի ժամանակ շատ մի Ազգային դեղավաճառք կային Մայրաքաղաքիս չորս կողմն. բայց մօտ տարիներ բժշկութեան ձևը փոխուելով, դեղարանքն ալ նոր ձևի մտան, որով առջի դեղավաճառք նոր բժշկաց լեզուին անհմուտ ըլլալով հարկադրեցան ձգել իրենց արհեստն ։*

*Իսկ նոր ձևոյն հետևող Ազգային դեղավաճառք Ազգիս բազմութեան համեմատութեամբ խիստ քիչուոր են. մանաւանդ թէ և ոչինչ ։ Ի Բերա ուր որ յայնչափ ազգայէն բազմութիւնք են, միայն Ազգային դեղավաճառ մի կայ ։ Նմանապէս ուրիշ տեղուանք ալ քանի մի հատ միայն։*

*Ոմանք կը հաստատեն՝ թէ Մայրաքաղաքիս մէջ հինգ կամ վեց հարիւրի չափ դեղավաճառի խանութ կայ ։ Համեմատութեամբ բնակչաց Մայրաքաղաքիս գոնէ հարիւր երեսնի չափ Ազգային դեղավաճառք պէտք էր որ ըլլային . բայց ես կ'երկբայիմ իսկ՝ թէ արդեօք երեսուն հատ Ազգային դեղավաճառք կը գտնուի՞ն։*

*Յոյնք և Հրէայք այս արհեստը գրեթէ մեր Ազգայնոց ձեռքէն բոլորովին յափշտակեցին իրենց յաջողակութեամբ, ճարտարութեամբ և աշխուժութեամբ։*

*Արդ՝ եթէ մարդ գլուխ տարւոյն մէջ քառասուն արծաթի դահեկան հաշուեմք , 100,000 ոսկի Ազգս ամեն տարի դեղավաճառաց կը վճարէ ։*

*Ազգային բժշկաց անհրաժեշտ պարտք է , որ Մայրաքաղաքիս մէջ ջանան ամեն թաղ Ազգային դեղարան բանալ տալ , որպէս զի Ազգային ընտանիք ապրին, և*

երիտասարդք գործ գտնեն, ծառայեն և իրենց ընտանեաց օգնեն։ Եւ միանգամայն հսկեն ու դեղօրէից վերայ։

Եղո՜ւկ որ այսչափ Ազգային քաջ և ճարտար բժիշկս և բնալոյծս ու ունիմք, բայց կարող չեղեն դեռ դեղօրէից գործարան մի բանալ Մայրաքաղաքիս մէջ. և բիւրաւոր ոսկի շարունակ կը վճարուին Անգղիոյ և Գաղղիոյ գործարանաց վասն այլ և այլ դեղօրէից։ Այս ալ ամենևին պատիւ չէ մեր Ազգային բժշկաց և դեղագործաց։

34.

## ՈՍԿԵՐՉՈՒԹԻՒՆ

Երբեմն Ազգային ոսկերիչք անուանի էին ճարտարութեամբ և կատարելագործութեամբ իրենց արուեստին մէջ։ Մանաւանդ Օգոստափառ Սուլթան Ապտ-իւլ Մէճիտ Կայսեր ժամանակ որչափ Ազգային ոսկերիչք հարստացան ձեռնտուութեամբ Մեծապատիւ Տիւզեան և Կէօչէեան գերդաստանաց, ամենքն ալ տանց և եկամտից տէր եղեն, ինչպէս որ մինչև հիմա ամեն ոսկերիչք կը վկայեն։

Բայց քանի որ Եւրոպացի ոսկերիչք ի միոյ կողմանէ յաճախեցին Մայրաքաղաքիս մէջ, և միւս կողմանէ քաղաքս աղքատանալ սկսաւ. գրեթէ մեծագոյն մասն ոսկերչաց փճացան։ Իրաւ շուկային մէջ դեռ կան բազմութիւն ոսկերչաց, այլ ոչ նոյն պայծառութեամբ՝ ինչպէս որ յառաջ էին։ Թէպէտ և Ազգայինք ոմանք բնատուր ճարտարութեամբ իւրեանց մօտեցան Եւրոպացւոց արհեստին կատարելագործութեան։

Չեմ կրնար որոշ բան մի զրուցել, թէ արդեօք Ազգս տարւոյն մէջ ոսկերչաց որչափ ոսկի կը վճարէ։ Սակայն անշուշտ՝ թէ՛ անդամանդեայ զարդուց համար՝ զոր

օրինակ մատանի, օղ, ապարանջան, մանեակ եայլն, և թէ ոսկեղէն և արծաթեղէն զարդուց և տան պիտոյից համար Ազգայինք տարւոյն մէջ առ նուազն 50,000 ոսկի կը վճարեն։ Անոնք որ այս ծախքը կ'ընեն, պէտք է որ փոխանակ օտարազգեաց յանձնելոյ, Ազգայնոց տան իրենց ոսկին. որպէս զի արհեստաւորք քաջալերուին, և ջանան օր աւուր առաւել ևս կատարելագործել իրենց արհեստը։

Վերոյիշեալ գումարին վրայ աւելցուր 10,000 ոսկի ալ տարւոյն մէջ վասն երեսուն հազար ընտանեաց և վասն յիսուն հազար գաւառականաց ոսկեզօծ ժապաւէն (չէրէզ, ճուլ, ճըմպըլ, օյա) ծախու առնլոյն համար։ Ընդ ամենն լինի 60,000 ոսկի։

35.

## ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՎԻՄԱԳՐՈՒԹԻՒՆ

Ազգի մի յառաջադիմութեան մեծ նշանն ալ տպարանաց բազմութիւնն է։ Ստոյգ է որ Ազգ մի որչափ մտաւորական իմացականութեամբ զարգանայ, այնչափ ալ տպարանքն կը ծաղկին, և պատճառ լինին բազում ընտանեաց և գործոնեայ երիտասարդաց ապրուստ ճարելոյ։

Այլ աւա՜ղ և բիւր եղուկ մեզ. շատ հեռի չերթանք, սա տասն տարւոյն մէջ անչափ հոգօք և աշխատանօք հաստատուած Ազգային երևելի և նշանաւոր տպարանքն այսօր ո՞ւր են։ Ո՞ւր են Արապեան, Միւհէնտիսեան, Փիւրքճեան, Տիվիթճեան, Գարոնեան, Մինասեան եայլն. տպարանքն. սոնք երբեմն ի՞նչպէս ծաղկեցան, և Ազգին որչա՞փ մեծամեծ ծառայութիւնս մատուցին, և ի՞նչ պատճառաւ արդեօք այն անուանի

տպարանները գոյութեան, որոց անունն և յիշատակն անգամ չմնաց ։ Վասն զի սմանք յԱզգէս օգնութիւն և քաջալերութիւն չգտնելով սնանկացան և անհետացան. սմանց ալ ժառանգքն կերան, մսխեցին, աղքատացան, և կարող չեղեն իրենց հայրենի արուեստին մէջ փառօք և գովութեամբ յաջորդել ։ Վերջապէս այժմ երկու գլխաւոր տպարանք միայն մնացին, Յարգոյ Ճ. Արամեան և Յ. Պօյաճեան Էֆէնտիից որոց առաջինն ի Փարիզ ուսած և հոն տպարան բացած ու տարիներով կեցած է, երկրորդն յԱմերկա ուսած ու վերադարձած է. ասոնք ալ իրենց անխոնջ ջանիւք և վաստակօք միայն յոտին կան. վասն զի մնացած տպարանները բաց ի Յ. Դավօֆեան Էֆէնտիէ կիսկատարք և անձեռնհաս են մեծամեծ գործառնութեանց, և չկայ ալ Ազգասէր անձ մի, որ այնպիսի ողորմելեաց օգնէ և ձեռն տայ։ Նոյնպէս քանի մի հատ քաջ և ճարտարարուեստ վիմագիրք ալ կան, զոր օրինակ Յարգոյ Կիւրճեան և Պետրոս Գալէնտէրեան և այլք ։ Այսօր ողորմելի Ազգս ասոնցմով պիտի մխիթարուի, և բոլոր իր յառաջադիմութեան յոյսը այս քանի մի տպարանաց և վիմագրաց վերայ դրած է ։ Որպիսի՜ մեծ թշուառութիւն. երկու հարիւր յիսուն հազար Հայազգի բնակիչք Մայրաքաղաքիս՝ որ ամեն տարի իր պետոյից, հաճոյից համար այսչափ միլիոնաւոր ոսկի կը վատնէ. իսկ այսպիսի ազգօգուտ և Ազգին բարոյական կեանք ու կենդանութիւն տուող ձեռնարկութեանց և ո՛չ փող մի կը հատուցանէ ։

Ուստի ամեն Ազգային պաշտօնատեղիք, վաճառականք, դեղավաճառք են. կը պարտաւորին իրենց յայտարարութիւններն, ծանօթագրերն, տոմսերն են, Ազգային տպարանաց կամ վիմագրաց շինել տալ. որպէսզի քաջալերութեան և յառաջադիմութեան առիթ ըլլան ։

Իսկ տպարանապետաց ջանքն այն պիտի ըլլայ, որ որչափ կարելի է մաքուր և դիւրագնոյ տպեն և վաճառեն, որպէս զի ամեն մարդ կարող ըլլայ կարդալ. մանաւանդ աղքատքն, որք զօրըստօրական հացերն հազիւ կարող են հայթհայթել։

Ո՛չ ոք կրնայ ուրանալ երկուց Մխիթարեան Տպարանաց Ազգին ըրած ծառայութիւնները. բայց կարծեմ թէ աւելի մեծ և շահաւոր պիտի ըլլար իրենց արդիւնքը, եթէ հրատարակած գիրքերնին աւելի դիւրագնոյ վաճառուէին. մանաւանդ քանի որ աւելի դիւրութիւնս ալ ունին։ Այսօր Մայրաքաղաքիս տպարանքն անոնց համեմատելով կրկնապատիկ դիւրագնոյ կը վաճառեն դպրոցական գիրքերը. և վնաս ալ չեն ըներ։

Շատ ջանացի և փափաքեցայ համոզել հարուստ մեծատունները, թէպէտ ի զուր, որ գէթ հազար ոսկւոյ դրամագլուխ մի հաստատուն եկամուտ դնելով ապահովցնեն, և այս դրամագլխոյն շահովը Ազգին յառաջադիմութեան համար արհեստական և ուսումնական օգտակար գրքոյկներ, կամ ամսական թերթեր տպուին, և իրենց անուամբ ձրի բաշխուին. մանաւանդ ի Հայաստան աշխարհի, ուր ողորմելիքն կը ցանկան տեսար մի՛ գրքոյկ մի կարդալ, և անով իրենց թշուառութեանց մէջ սակաւիկ մի մխիթարութիւն և սփոփանք գտնել. այլ աւա՜ղ եղկելեացն, որք իրենց յետին չքաւորութեան պատճառաւ զրկուած են այս մխիթարութենէ ալ։

Ո՛ւր պիտի գտնեմք անմահ յիշատակաց արժանի Պարոն Սամուէլ Մուրատ մի, և Պարոն Ռափայէլ Ղարամեան մի, որ այսպիսի ազգօգուտ գործողութեանց ձեռնտու ըլլան։

Այս մօտ տարիներս Ազգային տպարանաց մէջ շատ մի գիրք, ուսումնական տետրակք, և այլ և այլ

թերթ.ք տպուեցան ։ Բայց մեծագոյն մասամբ բանաստեղծութիւնք են, թատրերգութիւնք, չափաբերութիւնք, կրօնական գիրք, այլ և այլ լեզուաց քերականութիւնք, բառգիրք և ազգաց պատմութիւնք ։ Բայց շատ քիչ և գրեթէ ոչինչ են արհեստից վերաբերեալ գիրքերն, որոց մեծ կարօտութիւն և պէտս ունի Ազգս ։ Մեք պիտի ջանամք նախ զԱզգն մեր հարստացընել, և ոչ թէ զմեզ. երբոր Ազգը կը հարստանայ՝ ուսումնականք կը շատնան և տպրանք ալ կը ծաղկին, և անոնց պատճառաւ շատ մի ընտանիք ապրուստ կը գտնեն, և անգործ մարդկան ալ գործ կը ճարուի ։

Ազգային վարչութիւնք, բարձր աստիճանաւորք և կարող մեծատունք պէտք է ջանան բերել տալ Կարնեցի, Վանեցի, Տիգրանակերտցի, Սեբաստացի, Ատանացի և այլ ուրիշ Հայաբնակ գաւառներէն յարմար տղայներ, տպարանապետաց քով յաշակերտութիւն տալ, որպէս զի դրաշարութեան, տպագրութեան և տառ ձուլելոյ գործոց վարժուելէն և յառաջանալէն յետոյ երթան իրենց քաղաքն, ու հոն իրենց արուեստիւ ծառայեն Ազգին, և իրենց ընտանիքն ապրեցնելով շատ մի ալ գործաւորս ապրեցնելոյ պատճառ ըլլան։

Տպարանաց և վիմագրատանց ծախքն դեռ շատ չեն. և եղածն ալ գրեթէ պարտաւորեալ է Ազգին մէջ մնալ. և ընդ ամենն հազիւ 2000 ոսկւոյն կը հանի իրենց ծախքը ։ Տպարանաց և վիմագրատանց մեծագոյն և աւելի ծանր ծախքն թղթոց համար շատ մի կանխիկ դրամ հատուցանելն է ։ Այս օրինակ թուղթերն ալ գրեթէ Հրէայք միայն կը վաճառեն, ուսկաւ Յոյնք. իսկ Ազգայիններէն երեւելիքն են Յարգոյ Յ. Արշակ և Խօրասանճեան Ալիքսան էֆէնտիները։ Ամեն Ազգայինք կը պարտաւորին իրենց թղթեայ պի-

տոյքը սասնցմէ հոգալ, որպէս զի օր քան զօր ծաղկին և յառաջանան, մինչև քան զՀրէայմն դերաղանցեն։ Եւ փոփոխակի նոյն Ցարգս անձինքն ալ կը պարտաւորին միջին և արժանաւոր գնով վաճառել Ազգայնոց։

Արդ՝ վեր ի վերոյ հաշուով բովանդակ Հայաղգի տպարանք և վիմագրատունք տարւոյն մէջ 10,000 ոսկւոյն չափ կը հատուցանեն վասն տպագրեալ թղթոց։ Բայց Մայրաքաղաքիս մէջ՝ բոլոր կառավարութեան գլխաւոր պաշտօնատարութեանց դիւանաց և առանձնաւորաց և արհեստաւորաց ամեն պիտոյից համար սպառուած թղթոց գումարը տարւոյն մէջ 800,000 ոսկիէն աւելի է ըսող և պնդողն ալ կայ։

Ինչ՞ թէ ամեն Ազգային տպարանապետք, վիմագիրք և վերոյիշեալ թղթավաճառք միմեանց հետ միանալով իրենց մէջ ընկերութիւն մի հաստատեն. և իրենց ամեն պիտոյքն ուղղակի թղթոց գործարաններէն բերել տան. և Հրէից ըրած շահ ու վաստակը իրենց մէջ բաժնեն։ Եւ թէ միանգամ արխութեամբ սկիզբն առնեն այս ընկերութեան, այնուհետև յաջողութիւնք յաջողութեանց դուռ կը բանան՝ կըսէ, հասարակաց կարծիքը։ Ո՞րչափ փափագելի ԳՈՐԾ, բայց ո՞ւր են ԳՈՐԾՈՂՔ։

36.

# ՕՐԱԳԻՐՔ ԵՒ ՀԱՆԴԷՍՔ

Ինչպէս որ առաջ տպարանաց և վիմագրատանց վերայ խօսեցայ. նոյնպէս օրագրաց, լրագրաց, շաբաթական և ամսական ուսումնական տետրակաց և հանդիսից վերայ ալ քիչ մի խօսիմ։

Այսպիսի թերթերն մի մի քարոզիչք են բոլոր Հա-

յարնակ քաղաքաց, գաւառաց և գիւղից։ Այս կերպ հրատարակուած թերթից օգտեցութիւնն ալ շատ մեծ և զօրաւոր է։ Վասն զի մարդիկ բնականաբար հետաքրքրիք են. և որչափ տգէտ ալ ըլլան, դարձեալ նորանոր լուրս առնուլ կ'ախորժին և կը փափաքին, անհամբեր սպասելով լսել ու ընթեռնուլ այս համր և անբարբառ քարոզիչները, որք իրենց ճարտարաբանութեամբ կամին ամենեցուն միտքն համոզել, և իրենց կարծեաց համամիտ առնել։

Արդ՝ ամեն պարբերական թերթից վախճանն ուրիշ բան չէ, բայց եթէ Ազգին ծառայութիւն և բարիք ընել. ինչպէս որ կը խոստանան զայն միշտ իրենց առաջին յայտարարութեանց մէջ։ Այլ և այլ քաղաքակրթեալ ազգաց բարի օրինակօք, և անոնց հանապազօր գործունեայ եռանդն գովելով, անոնց դիտութիւնները յայտնելով, զարմանալի ճարտարարուեստ ձեռագործնին նկարագրելով, և անոնց բարձր հանճարին գեղեցկահիւս յօդուածներովն կամին Ազգայնոց միտքն լուսաւորել, հրահանգել և կրթել։

Գեղեցիկ և գովելի ընթացք։

Վասն այսորիկ խմբագրաց ամեն խօսք և հանապազօրեայ հրատարակութիւնքն պարտին միշտ առաքինութիւնս գովել, քան թէ ախտալից մոլութիւնս և մարդկային տկարութիւնս հրատարակել։ Ամեն եկեղեցականաց և աշխարհականաց առաքինութիւնները գովեմք, անոնց բարի գործքերը յառաջ բերեմք. ինչու որ բարի օրինակք մարդկանց սրտին շատ մեծ և զօրաւոր կ'ազդեն, քան թէ մոլութեանց ազդեցութիւնք։

Այժմ մեզի արիանալ պէտք է, ջանալ և գործել պէտք է, ծուլութեան, դանդաղութեան ալ ժամանակն անցաւ։ Մեզի ուսումնք և գիտութիւնք պէտք է, արուեստ պէտք է, վաճառականութիւն պէտք է.

որպէս զի հարստանալով կարող ըլլամք մեր ընտանիքը աղքատութեան անտանելի լծէն ազատել և երջանիկ ապրեցնել. մեր զաւակները նախնական դպրոցաց մէջ կրթել, այլ և այլ օգտակար արուեստից ծառայեցուցանել: Ահա տունք և տանց նման օգտակար դիտողութիւնք են, զորս որ ամեն Ազգային խմբագիրք կը պարտաւորին հասարակութեան հաղորդել:

Ի վերայ այսր ամենայնի շատ իրաւացի են առ հասարակ ամեն խմբագրաց գանգատքն ալ, թէ իրենց աշխատութեանց փոխարէն ըստ արժանւոյն ամենեւին չեն վարձատրուիր. այս ալ աղքատութեան հետեւանքն է: Ուստի ջանալու է, այդ գործոյն ծախքը հաշուելով խմբագրաց ալ օգուտը հոգալ. մանաւանդ որ Ազգային լրագրաց հրատարակիչք անշուշտ ազգային պէտք է ըլլան, որով շահն ալ Ազգին մէջ կը մնայ:

Արդ՝ ամեն ազգային լրագրաց, օրագրաց, հանդիսից և ուսումնական տետրից Խմբագրիչք և Հրատարակիչք բաց ի իրենց սովորական ծախուց տպագրութեանց ևն, կըհարկադրին կանխիկ վճարել և ս վան թղթոց. տանք ամենքն ալ միասեղ գումարելով տարւոյն մէջ հարկաւ 2000 ոսկի վճարելու կը պարտաւորին: Բայց մեք կը յորդորեմք ծախքն ալ շատցնել՝ լրագիրներն ալ, մանաւանդ ազգային լեզուով. և ի մասնաւորի պէտք է փութալ այնպիսի ընտիր և կարգաւոր լրագիր մի հրատարակել, որ Ազգին և ազգային գործոց միայն Տեղեկագիրը ըլլայ:

37.

## ԼՈՒՍԱՆԿԱՐՔ

Ազգիս մեծ փառք և պարծանք են Մեծապատիւ Ապտուլլահեանք և Սեպահեանք, որք իրենց արհես-

տին մէջ այնչափ յառաջացան, մինչև Եւրոպիոյ քաղ և անուանի լուսանկարուն անգամ դերազանցեցին նոյն իսկ Եւրոպացւոց վկայութեամբ, և վկայականիւք Տիեզերական Արուեստահանդիսից Գաղղիոյ և ուրիշ պետութեանց։

Ազգայինք պարտաւոր են փոխան օտար ազգաց ձեռին լեցուներոյ իրենց դրամը՝ Ազգային արուեստագիտաց յանձնել, որպէս զի առուել ևս քաջալերուին, և շատ մի ալ ընտիր և քաջ աշակերտս յառաջացնելով կարող ըլլան թևակոխել այլոց ազգաց վերայ՝ Մայրաքաղաքիս և գաւառաց մէջ նորանոր գործարաններ հաստատելով։

Պօլսեցի Ազգայինք որչափ ընդունակ են այսպիսի գեղարուեստից։ Այլ աւա՜ղ, չի՛ք միութիւն, և չի՛ք ազգասիրութիւն, որովք կարող ըլլայինք գեղարուեստից ազգային գործարան և ուսումնարան մի բանալ, ուր գծագրութեան, նկարչութեան, լուսանկարութեան արուեստները աւանդէին Ազգայնոց։

Այլ թէ այժմեան վիճակին մէջ ալ որչափ ծախք կ՚ընեն արդեօք Ազգայինք լուսանկարաց և ուրիշ նկարուց համար, որոշել դժուարին է. հաւանական հաշուով 2,000 լիրա մի ևս յայսմ մասին հաշւոյ ցանկին մէջ անցունել բաւական կը սեպեմք։

## 37.

## ՆԱԽԱՊԵՏՔ, ՆԱԽԱՎԱՐՔ ԵՒ ՆԱԽԱՍՏԻՔ

Վաափորի նեղուցին մէջ նաւավարք շատ կը գործէին երբոր շոգենաւքն չկային։ Ինքնիշխանին հին հաշւոյն նայելով մինչև եօթանասուն հինգ հազարի հասեր է

նաւավարաց թիւը, բայց այսօր շատ քիչ են։ Ի վերայ այսու ամենայնի քան նաւավարք մեծագոյն մասամբ անդղացի Յոյնք են։ Իսկ Ազգայինք մեր՝ Ազգիս բազմութեան համեմատելով գրեթէ ոչինչ են։

Ինչու Յունաց պէս քան նաւավարս չունենանք, որք կարող ըլլան անոնց նման իրենց աղքատ ընտանիքն ապրեցնել և տուն տեղ ունենալ. ո՞չ ապաքէն առանց ամենայն ալ ծուլութեան և դանդաղութեան պտուղք են։

Իրաւցնէ շատ մեծ ամօթ է Ազգիս Հայոց, որ այսչափ տարի վաճառականութեամբ ծաղկեալ և երկուց ծովուց մէջ գտնուած ծովեզերեայ Մայրաքաղաքի մէջ բնակի, և դեռ ցուկանաւ մի չունենայ, չէ թէ Սև ծովուն և կամ Միջերկրականին մէջ նաւարկելու, հապա սա մեր աչաց առջև տեսնուած Մարմարայի լճանման ծովուն մէջ առուտուր ընելու։ Ո՞ւր են Հայոյն արիութիւնն ու աշխուժութիւնը։ Աւելորդ է մէջ տեղ բերել Պանտրմայի դանդաղ մակոյկներն։ Ահա ամեն օր իրենց աչաց առջև կը տեսնեն Յունաց արագընթաց և թեթևաշարժ ցուկանաւս. սակայն ամենևին չեն ջանար անոնց նմանցնել։ Եթէ Պոլսեցի Ազգայնոց միայն ձէթն և ձիթապտուղն, սոխն և սխտորն, բակլայն և սիսեռը, բրինձն և ոսպը, ածուխն և փայտն և ուրիշ պիտոյքը բերէին և վաճառէին, որչափ դրամ պիտի շահէին։ Թեքֆուր-տաղին ցորեանն և գարին, վարսակն և այլ արմտիքն ինչու մեր Ազգային ցուկանաւքն պիտի չփոխադրեն ի Պոլիս։ Ո՞ւր են Իզմիտացի, Տրապիզոնցի, Վառնացի և Զմիւռնիացի և այլ Հայոց ցուկանաւքն, որք իրենց երկրին անբաւ բերքն առ և անդ փոխադրեն։

Սակայն այսպիսի յանցանքն ամենևին հասարակ ժողովրդեան չեն, այլ իւրաքանչիւր տեղեաց կարող անձանց, մանաւանդ վաճառականաց, որոց պարտք էր քանի մի փոքրիկ ցուկանաւս շինել տալ, հմուտ նաւա-

պետաց յանձնել ; Ազգիս աշխոյժ երիտասարդս գոր-ծածել, և մօտակայ տեղուանք նաւարկելով զանոնք կրթել ու վարժեցնել նաւարկութեան ։ Տահն ու վաստակն մարդոյս յանձն առնուլ կու տայ ամեն վասնգ, եւս և մահն անգամ ։ Թէ որ Ազգայինք մեր իրենց պէտոյքն այս Ազգային նաւերէն գտնէին, քիչ ժամանակի մէջ կը տեսանէինք աչօք՝ թէ ինչչափ Ազգային նաւապետք յերևան կ'ելնէին ։ Բայց այսպիսի ազգօգուտ մտածութիւնք և գործադրութիւնք շատ հեռի են մեզմէ ։ Եթէ տարւոյն մէջ ծովային երթևեկութեանց և վաճառայ, ապրանաց և բերոց փոխադրութեանց համար տրուած դրամը հաշուելու կարող ըլլայինք, հարկաւ առ նուազն 50,000 ոսկի վճարումը պիտի տեսնէինք . այս գումարն ալ հնար էր Ազգին մէջ մնալ, եթէ Ազգային նաւապետք և նաւավարք գտնուէին այնչափ, որչափ Ազգին պէտքը կը պահանջէր ։ Երանի այն ժամուն, յորում առաջատալից մուտ և ելս պիտի առնեն ցուկանաւքն Հայոյն ։

## 39.

## ԱՅԼ ԵՒ ԱՅԼ ԾԱԽՔ

Ուրիշ շատ նիւթեր և պէտոյք կան, որոց վերայ ալ առանձին յօդուածով կրնայինք խօսել . բայց խօսքերնիս երկնցնելով ընթերցողաց ձանձրութիւն չտալու համար այս գլխակարգութեան մէջ զամենքը կ'ամփոփեմք, և իւրաքանչիւր ծախուց համար տարեկան որչափ ոսկի վճարումը համառօտիւ կը յայտնեմք ։

Ա. — Եթէ երեսուն հազար ընտանեաց իւրաքանչիւրին տարւոյն մէջ վեր ի վերոյ ոսկի մը վճարելու ըլլայ վասն ասեղի, գնդասեղի, մետաքսեայ և բամբակեայ դեր-

ձանի, (Եօղքէօշէօմ, Բէզէ) կոճակի (Չօզօ) մետաքսեայ և բամբակեայ ժապաւէնի (Թօրպէլը, Չէքէր) և այլն. և այլն. ասոնց ամենուն գումարն 30,000 ոսկւոյ կը հասնի. թող գաւառայնոց վճարածն ։ Այսպիսի ապրանքները ծախողք և չահողք մեծագոյն մասամբ Հրէայք են։

Բ. — Սրճանոցաց և գրօսարանաց եթէ չիյուն հազար Ազգայինք ամեն ամիս քսան դահեկան միայն վճարեն, տարւոյն մէջ 120,000 ոսկի կը հասուցանեն։

Գ. — Թատրոնից, պարահանդիսից և նուագածուաց համար տարւոյն մէջ 30,000 ոսկի հաւանական հաշուով։

Դ. — Դիւղագնացութեանց և զուարճասեղեաց համար տարւոյն մէջ 20,000 ոսկի նոյնպէս։

Ե. — Եթէ հինգ հազար անձինք միայն ընդ ցամաք երթևեկութեանց համար, ձիոյ, կառաց և պատգաբակաց ամեն օր մարդ գլուխ երեք դահեկան վճարեն, տարւոյն մէջ 54,000 ոսկի կ'ընէ։

Զ. — Դպրոցաց, Աղքատանոցաց, Հիւանդանոցաց պիտոյից տարեկան ծախուց համար 10,000 ոսկի կ'ենթադրեմք։

Է. — Եկեղեցեաց և համօրէն եկեղեցականաց դասուց և [illegible] տարեկան արուածը 50,000 ոսկի։

Ը. — Բովանդակ Ազգայինք՝ մեծ և փոքր, չափահաս և տղայ, դպրոցական և ուսումնական, եկեղեցական և աշխարհական, արուեստաւոր և վաճառական, գրագիր և փաստաբան, ասոնք ամենքն ալ տարւոյն մէջ ո՞րչափ արդեօք ծախք կընեն վասն գրոց, թղթոց, գրչաց մելանից, մեծ և փոր մատենից և հաշուետումարաց վաճառականութեան և այլ իրենց պէս պէս պիտոյից համար ։ Ըստ իս 40,000 ոսկի կը հաշուեմ առ նուազն։

Թ. — Խաղարկութեանց, բաղնի և աւելորդ և անպիտան և ընդունայն ծախուց համար տարւոյն մէջ վճարուածը 50,000 ոսկի գոնէ պէտք է գնել։

Ընդ. ամենն 404,000 ոսկի լիրա., որ. տարւոյն մէջ Ազգին քամկէն չարունակ պակսելու վրայ է ։

## 40.

# ՍՊԱՍԱՒՈՐՔ ԵՒ ՍՊԱՍՈՒՀԻՔ

Երանի էր եթէ ամեն Ազգայինք մեր համազգի ծառայս և աղախնայս իրենց ծառայութեանց մէջ գործածէին, բայց որչափ հեռի եմք ։ Այսօրուան օրս Յոյն սպասուհիք դրեթէ տիրապետած են բոլոր մեր հարուստ և միջակային ընտանեաց վերայ ։ Միւս կողմանէ ալ Գաղղիացի կանայք և աղջկունք տղայոց կրթութեան պատճառաւ մուտ գտան մեր ընտանեաց մէջ . և այսպէս Ազգին սեփհական կրթութիւնն ալ խանգարելու վերայ է, և կերպ կերպ անկարգութիւնք անպակաս են յԱզգի մերում ։ Վասն զի ամեն ազգ իրեն բնաւորութեան յատկացեալ առանձին կրթութիւն մի ունի ։ Երբոր մերինը օտար ազգաց կրթութեան հետ կը խառնեմք, ազգային բուն բնաւորութիւնն ալ կը խանգարուի և ճիւաղ կը դառնայ ։ Իմ փափաքս այս է, որ մանաւանդ տղայոց և մանկանց կըրթիչքն Ազգայինք ըլլան և ոչ օտարազգիք . վասն զի Ազգս անկէց մեծ օգուտ կը քաղէ ։

Զմիւռնիոյ Առաջնորդ Գերապատիւ Մաքսուտեանց Մելքիսեդեկ Վարդապետն Գաւառական վարչութեան ժողովոյն առջև սքանչելի ատենախօսութիւն մի ըրաւ այս նիւթոյս վրայօք, որով պարզ և բացայայտ յայտնեաց՝ թէ Զմիւռնիոյ Հայազգի բնակչաց թիւն ընդամենն հինգ հազար անձինք ըլլալով, իրենց ծառայութեան մէջ Յունազգի 433 սպասաւորս և սպասուհիս

կը գործածեն ։ Իւրաքանչիւր աղախնոյ, կամ ծառայի տարեկան վարձքն, ուտելոյն և հագուստն հաշուի ընելով, տարւոյն մէջ վեց հազար ոսկիէն աւելի Զմիւռնիոյ Հայազգեաց քսակէն Յունաց քսակին անցնիլը մի առ մի կ'ապացուցանէ և կը յաւելու նոյն Գերապատիւ Առաջնորդ վարդապետն թէ՝ «Ազգն այսչափ ու-
«կիէն աւելի տարեկան տուրք կը վճարէ Յունաց իւր
«յօժարութեամբ և շատ անգամ աղաչանքով ։ Բնաւ
«երբէք չեմ պախարակեր, կըսէ դարձեալ, Յոյները,
«այլ մանաւանդ թէ կը գովեմ, որ իրենց աշխատան-
«քով այսքան դրամ կը շահին մեզմէ, մեր փոքրա-
«թիւ Ազգայիններէն ։ Այլ կը պախարակեմ մերայնոց
«ծուլութիւնն ու անտարբերութիւնն, որ ո՛չ միայն
«ուրիշներէն չեմք շահիր, այլ մեր դրամները օտարաց
«կու տամք, և մեր աղքատներուն ձեռքէն կը տագ-
«նապիմք» ։ (*) Անուրանալի ճշմարտութիւն ։

Արդ՝ եթէ հինգ հազար Հայազգի Զմիւռնացիք ամեն տարի վեց եօթն հազար ոսկի օտարազգի Յոյն ծառայից և աղախնայց ձեռքին կը լցուցանեն, հապա երեսուն կամ քառասուն հազար Հայազգի Պոլսեցի ընտանիք որչափ արդեօք հանգամանքով ոսկիներ օտար ազգաց ձեռքին կը լեցունեն ։ Իւրաքանչիւր ընթերցող թող ինքիրեն վեր ի վերոյ հաշիւ ընէ, և հարկաւ 100,000 ոսկիէն շատ աւելի պիտի գտնէ ։

Մեր Ազգին մեծ դժբաղդութեանց մինն ալ այս է, որ այս կերպ աղքատ աղջկանց հրահանգի համար մտանաւոր տեղիս չունիմք ։ Ազգային Տիկնայք շատ մեծ պատասխանատուութեան ներքև ընկած են յայսմ մասին, և անհրաժեշտ պարտք մի կայ վրանին ․ պէտք է

---

(*) Տես Արևելեան Մամուլ, Հանդէս որ կը հրատարակի ի Զմիւռնիա, 1878 Մայիս ամսոյն Տետրին մէջ, յերես 20։

ջանան ըստ Եւրոպացւոց ընկերութիւնս հաստատել այս վախճանաւ. և այնպիսի հաստատութիւն մի հիմնել, ուր աղքատ օրիորդք ուսանին՝ թէ աղախին մի, սպասուհի մի, սենեկապան մի կամ դայեակ մի ինչ կերպ ծառայութիւն պիտի ընէ։ Պէտք է նա հեռի գաւառներէն եկող ողորմելի անտէր և անօգնական աղախինները մասնաւոր տանց մէջ ժողովել. ինչպէս որ տեսի ի Փարիզ և այլուր։ Եւ հոն կրթել, հոն սովրեցնել իրենց պարտքն և տան մի վերաբերեալ ամեն կերպ ծառայութեանց եղանակը. զոր օրինակ կար կարել, մաքրել, սրբել, կահ կարասին ըստ տեղւոյն յարդարել, և ցուցունել՝ թէ տանտիկնանց ինչպէս ծառայութիւն պէտք է ընել, զանոնք վարժեցընել՝ թէ արանց հարկաւոր եղած սպասը ինչպէս ամենայն պարկեշտութեամբ առ օրին պէտք է շուտով կատարել. որպէս զի Ազգայինք չգանգատին Հայազգի աղախինեայց և աղջկանց դանդաղութեան և անզօրծունէութեան վերայ՝ և մեղադրել թէ աշխոյժ և աշալուրջ չեն։

Մինչև ցարդ ընդ երկար և թերևս ալ ձանձրալի գրութիւն մի մէջ տեղ բերել պարտաւորեցանք, ուզելով մի առ մի համրել զանազան պիտոյքները, որք արմատ են գործոց, և գործողաց ալ ճանապարհ կը ցուցանեն։ Խօսքերնիս կնքելոյ և վերջացնելոյ համար քաղեմք հոս ցայս վայր բացատրուած պիտոյից ցուցակն, դնելով առընթեր այն գումարն, զոր Կ. Պօլսոյ Հայազգիք կը վճարեն ըստ մեր հաւանական հաշուոյն։(*)

---

(*) Հարկ է զեկուցանել ընթերցողաց թէ վերոյեդեալ գլխոց հաշիւներուն մէջ քանի մի տպագրական սխալներ սպրդած՝ և առաջիկայ աղիւսակին մէջ ուղղուած են։

## ՈՒՏԵԼԻՔ

| Թիւ | | Օսմ. Ոսկի Լիրա |
|---|---|---|
| 1. | Հաց | 1,080,000 |
| 2. | Միս | 1,080,000 |
| 3. | Հաւ | 6,000 |
| » | Հաւկիթ | 12,500 |
| 4. | Նպարք — Ընդեղէնք | 50,000 |
| » | Համեմք | 20,000 |
| » | Բրինձ | 37,500 |
| » | Կարագ | 57,600 |
| » | Ձէթ | 60,000 |
| » | Խմորեղէն (մաքարօնի, շէհրիէ եւն) | 10,000 |
| » | Պանիր | 114,000 |
| 5. | Բանջարեղէնք | 720,000 |
| 6. | Պտուղք | 450,000 |
| 7. | Սուրճ | 81,600 |
| » | Շաքար | 100,000 |
| 8. | Գինի եւ Օղի | 540,000 |
| 9. | Անուշեղէնք | 23,200 |
| | | 4,442,400 |

## ԱԳԱՆԵԼԻՔ

| Թիւ | | Օսմ. Ոսկի Լիրա |
|---|---|---|
| 10. | Զգեստք արանց | 500,000 |
| 11. | Զգեստք եւ զարդք կանանց | 600,000 |
| 12. | Սպիտակ կտաւ եւ գունաւոր բամբակեայք | 300,000 |
| 13. | Կօշիկք | 250,000 |
| 14. | Նկարէն դաստառակք | 8,000 |
| 15. | Զանազան պիտոյք — Թաշկինակ | 15,000 |
| » | Գուլպայ | 25,000 |
| » | Բրդեայք | 15,000 |
| » | Գլխանոց (ֆէս) | 40,000 |
| » | Հովանոց | 15,000 |
| | (Փոխադրելի) | 6,210,400 |

| Թիւ | | Օսմ Ոսկի Լիրա |
|---|---|---|
| | (Փոխադրեալ) | 6,210,400 |
| » | Ձեռնոց | 20,000 |
| » | Մուշտակ | 50,000 |
| 16. | Ներկարարք | 10,000 |
| | | 6,290,400 |

## ՏՈՒՆՔ ԵՒ ԿԱՐԱՍԻՔ

| | | |
|---|---|---|
| 17. | Շինուածք | 100,000 |
| 18. | Տան կարասիք եւ զարդք | 120,000 |
| 19. | Ցախճապակեայ եւ ապակեայ ամանք | 30,000 |
| 20. | Կահազարդք | 30,000 |
| 21. | Պղնձեղէնք | 45,000 |
| 22. | Անագ | 1,700 |
| 23. | Ժամացոյց | 50,000 |
| 24. | Մեղրամոմ | 2,500 |
| » | Ճարպամոմ | 22,500 |
| 25. | Վիմաձէթ (կազ) | 80,000 |
| 26. | Հրահան կամ լուցկի | 10,000 |
| 27. | Օճառ | 50,000 |
| 28. | Ածուխ | 100,000 |
| » | Փայտ | 60,000 |
| 29. | Տանց վարձք եւ տուրք | 40,000 |
| | | 7,032,100 |

## ԱՅԼ ԵՒ ԱՅԼ ՊԻՏՈՅՔ

| | | |
|---|---|---|
| 30. | Ծուխ եւ Ծխաթուղթ | 900,000 |
| 31. | Սափրիչք եւ Վարսավիրայք | 72,000 |
| 32. | Բժիշկք | 100,000 |
| 33. | Դեղօրայք | 100,000 |
| 34. | Ոսկերչութիւն | 60,000 |
| 35. | Տպագրութիւն եւ Վիմագրութիւն | 10,000 |
| 36. | Օրագիր եւ հանդէսք | 2,000 |
| 38. | Նաւապետք, Նաւավարք եւ Նաւաստիք | 50,000 |
| | (Փոխադրելի) | 8,328,100 |

| Թիւ | Օսմ. Ոսկի Լիրա |
| --- | --- |
| (Փոխադրեալ) . . . . . . . . . . . . . . | 8,328,100 |
| 39. Այլ եւ այլ ծախք | |
| » Ա. Մանր մունր ընտանեկան ծախք . . . . | 30,000 |
| » Բ. Սրճանոցք եւ զբօսարանք . . . . . . . . | 120,000 |
| » Գ. Թատրոնք, պարահանդէսք եւ նուագածուք | 39,000 |
| » Դ. Գիւղագնացութիւնք եւ զուարճատեղիք . | 20,000 |
| » Ե. Ցամաքային երթեւեկութիւնք . . . . . . | 54,000 |
| » Զ. Դպրոցք, Աղքատանոցք եւ Հիւանդանոցք | 10,000 |
| » Է. Եկեղեցիք եւ Եկեղեցականք . . . . . . . | 50,000 |
| » Ը. Թուղթ, գրիչ, գիրք . . . . . . . . . . | 40,000 |
| » Թ. Խաղարկութիւնք թղթոց եւ բաղդի . . | 50,000 |
| 40. Սպասաւորք եւ սպասուհիք . . . . . . . . . | 100,000 |
| Գումար ամենեցուն . . . . . . . . . | 8,832,100 |

Այդ աղիւսակով հաւաքեալ գրեթէ ինն միլիոն Օսմանեան ոսկի լիրայից գումարն անկատար ցուցակ մի է Կ. Պօլսոյ Հայազգի բնակչաց ըրած ծախուց։ Ըստ որում որչափ ալ ամեն պիտոյից վերայ զատ զատ խօսեցանք. սակայն դեռ շատ պիտոյք ալ կան, որք մոռցուած են, կամ զորս չեմ յիշատակած ամեն մարդոյ առ հասարակ հարկաւոր չլինելոյն համար։

Դարձեալ հարկ է գիտնալ՝ թէ երբ զանազան նիւթոց համար այսչափ կամ այնչափ գումար գրած եմ, անոնք ամենքն ալ հաւանական և մերձաւոր հաշւով դրած և հմուտ անձանց կարծեաց և խորհրդոց վերայ հիմնած եմ. թերևս քանի մի գլխոց մէջ դրածս ընթերցողին շատ երևայ. անոր վերայ ընդունայն տեղ չեմ պնդեր, կարելի է որ անոնց զրուցածին պէս ըլլայ։

Ես միայն այս նպատակն ունեցած եմ. այսինքն՝ է ցուցանել՝ թէ Մայրաքաղաքիս մէջ գործ կայ և դրամ ալ կայ. բայց Ազգայինք կարևոր արհեստներէ հեռի կենալնոյն համար, թէ իրենք չեն վաստկիր, և թէ

Ազգին դրամը իւրեանց քսակէն դուրս կ՚ելլէ և օտա-
րաց ձեռքին կ՚անցնի . անոնք կը հարստանան, մերայինք
կ՚աղքատանան ։ Այդ պակասութեան դարմանը Ազգայ-
նոց մէջ կերպ կերպ արհեստ մուծանել և յառաջա-
ցընելն է ։ Այս կէտին վրայ երկբայութիւն ունեցող
մարդ մի չկայ . դժուարութիւնն հոս է միայն , թէ
ի՞նչպէս հնար է դիւրաւ և յաջող ճանապարհաւ այդ
նպատակին հասնիլ ։

Գրութեանս կատարելութիւնը կը պահանջէ որ այս
մասին վրայօք ալ քանի մի խօսք զրուցեմ. կամ թէ
աւելի պարզ խօսելով, նոյն նպատակին հասնելու
ամեն ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ միջոցս պարզաբանեմ,
ինչպէս որ Յառաջաբանութեան մէջ խոստացեր էի. և
այս ալ հրատարակութեանս իբր վերջաբան պիտի ըլլայ ։

Տեսաք միլիոնաւոր ոսկւոյ ահագին պատկերը, զոր ամեն տարի Ազգս կը հատուցանէ իր պիտոյքներուն համար ։ Այսչափ միլիոնաւոր ոսկւովք տոյգ Ազգ մի կարող էր հանդիստ ապրիլ. իսկ մեք ընդհակառակն տարւոյ ի տարի աղքատանալոյ վերայ եմք. հարստութիւննիս բոլորն ալ փճացաւ ։ Եւ թէ այս մոլար և վնասակար ճանապարհն քանի մի տարի եւս անմտաբար շարունակելոյ ըլլամք, Աստուած հեռի արասցէ, բովանդակ Ազգս դուռնէ ի դուռ պտտելով իւր օրական ապրուստը ողորմութեամբ պիտի ճարէ ։

Այս թշուառութեան բուն ներքին և գաղտնի պատճառն չգիտնալով, ոմանք Մայրաքաղաքիս սովորական մեծամեծ հրդեհից տուին, այլք հասարակ արհեստաւորաց արուեստից դադարելոյն. ոմանք ալ շարունակ ահեղ և սոսկալի պատերազմաց՝ որ միմեանց յաջորդեցին ։ Սակայն ասոնցմէ և ո՛չ մին ։ Այս ամեն զրուցուած աղէտք և թշուառութիւնքն մեր Ազգին Քաղաքային Տնտեսական գիտութիւնն (économie politique) ՝ամենեւին չգիտնալէն ծագեցան և յառաջ եկին ։ Ազգիս աղքատութիւնն հետեւանք էր մեր ելից և մտից մէջ անհուն անհաւասարութեան, և որպէս զի մուտքն ելից հաւասարին, որչափ ինչք, անդամանդք, դրամք, արծաթեղէնք, տունք և հաստատուն կալուածք կային, հետզհետէ ամեն տարի ծախուեցան ։

Հիմայ ո՞ւր են այնչափ տունք և կալուածք զորս Ազգայինք ունէին Մայրաքաղաքին չորս կողմն ։ Ահա մի առ մի ծախուեցան, օտարաց անցան ։ Երբեմն առած էր և ամենուն բերանն կը պտտէր, թէ Ազգային ոք Զուխաճի խանը Օտա մի, Սըրմաքէշ խան Զէյրէք մի, ի Բերա՝ Տէօրթ Եօլ-Աղզի տուն մի ունենար, այն անձը երջանիկ կը դատուէր և մատամբ կը ցուցուէր ։ Եւ ստուգիւ ալ

այս ամէն տեղերը գրեթէ Ազգայնոց ձեռքն անցած էին։ Այլ աւա՜ղ, կալուածքն և խանութքն մի առ մի ծախուեցան Ազգիս տարեկան ծախուց բացը գոցելոյ համար։ Ազգիս մուտքն տարուէ տարի պակսեցաւ, մինչ ելքն չափազանց աւելցաւ. ելից և մտից անհաւասարութիւնն հաւասարելոյ համար անզգալի եղանակաւ Ազգիս հարստութիւնն փճացաւ։ Այսօր օղ մի, վաղիւ մանեակ մի, միւս օր ապարանջան մի, այս տարի խանութ մի, գալ տարի երկիր մի, միւս տարի հաստատուն կալուած մի չարունակ ծախուեցան և միշտ ծախուելոյ վերայ են. և այսպէս յայս ողորմելի աղքատութեան վիճակ եկաք և հասաք։

Իսկ արդ մեզ՝ որ ոչ երկրագործութիւն ունիմք՝ ոչ գործարան, ոչ արուեստ, ոչ վաճառականութիւն և ոչ ալ հարստութիւն, ինչ կը մնայ առնել։ Միթէ յուսահատութեամբ երթամք ինքզինքնիս ծովուն մէջ նետե՞մք։ Ո՛հ անդր, հեռի մեզմէ այսպիսի վատ և անարժան խորհուրդ։ Արիանալ պէտք է, ջանալ պէտք է, միշտ գործել պէտք է։ Այսչափ միլիոնաւոր ոսկի ամէն տարի հատուցանող Ազգն կարող է սթափիլ, եթէ պակասութիւնները տեսնել և ճանաչել, և ըստ այնմ իրեն օգտակար ընթացից ձեռք զարնել։ Ամէն տարի այսչափ ոսկի տուժելնիս քննելով տեսանք թէ մեք որչափ յօգտակար արուեստից և ի շահաւոր տուրևառութեանց հեռի մնացած եմք, զորս դիւրութեամբ կարող էինք ձեռք բերել, այլ մեր ծուլութիւնն կամ դանդաղութիւնն ցարդ թոյլ չտուլին մեզի գործել, որպէս զի այս անտանելի վիճակէն ազատիմք։

Ըստ իմ տկար կարծեացս՝ Ազգիս այս թշուառ վիճակէն ազատելոյ համար ո՞րչափ ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ միջոցք կան, զանոնք ժամանակ չկորուսանելով իսկոյն պէտք է ի գործ դնել. և ես հոս այսպիսի

ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ միջոցաց. գլխաւորները պիտի առաջարկեմ Ազգային Ընդհանուր Վարչութեան և Թաղական ժողովոց, Եկեղեցական և Աշխարհական բարձրաստիճան կարող Անձանց և Իշխանաց, որոց ամենեցուն ձեռքին հաւատացած բովանդակ Ազգիս իշխանութիւնն և վարչութիւնն, հոգն և խնամքն ։ Առոնցմէ կախուած կան կեանք ու մահ, երջանկութիւն և թշուառութիւն; բաղդ և յառաջադիմութիւն Ազգիս ։ Տեսէք ապա որպիսի՞ ծանր պատասխանատուութեան ներքև գտանին նոքա, որք Ազգիս վարչութիւնն կամօք և յօժարութեամբ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ յանձն առած են ։ Ես ահա այսպիսի ընտրեալ, իմաստուն և կարող Պաշտօնատարաց կարգաւ մի առ մի առաջի անեմք յետագայ ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ միջոցս, որք Ազգիս հարստութեան և յառաջադիմութեան պատճառ կրնան ըլլալ ։ Բայց այս միջոցներն առաջարկելէն առաջ հարկ կը սեպեմ նախ քանի մի խորհրդածութիւնս ընել ։

Ինչպէս որ առաջ ալ գրուեցի, մեք ոչ պետութիւն ունիմք, ոչ իշխանութիւն և ոչ ալ հարստութիւն. և որովհետև այսպիսի դառն և դժնդակ ժամանակի մէջ առհասարակ ամենքն աղքատացան, թէ՛ մեծատունք և թէ հասարակ ժողովուրդն, վասն որոյ այն ցեղ և այն տեսակ օգտակար և շահաւոր միջոցաց ձեռնարկելու եմք, որ ինչպէս վերը գրուեցի, ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ ըլլան մեզի համար, և ոչ թէ բարոյապէս և նիւթապէս անկարելի առաջարկութեանց պարապ տեղ ձեռն արկանեմք, որք միլիոնաւոր ոսկւոյ կարօտ են ։ Ինչպէս որ բնութեան մէջ ամեն բան փոքրիկէն կը մեծնայ, այսպէս ալ մեր Ազգին յառաջադիմութեան համար առաջարկուած Միջոցքն ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ լինելոյ համար քիչէն սկսելու են. և իմաստութիւնն ու հանճարն ալ հոս են ։

*Այո՛ մտածաւոր մարդ մը, որչափ հարուստ ալ ըլլայ, կարող չէ մէկուց քանի մը միլիոն ոսկի ծախք ընել վասն հասարակաց շինութեան, թէև իւր շահուն և օգտին համար ըլլայ ։ Վասն այսորիկ արդեան ժամանակս հարիւրաւոր և հազարաւոր մարդիկ իրերաց հետ միանալով այլ և այլ ընկերութիւնս հաստատեցին, մեծամեծ դրամագլուխս մէջ տեղ բերին դրին, իւրաքանչիւր ոք իւր հարստութենէն փոքրիկ մաս մը նուիրելով այն մեծագոյն հարստութեամբ գիզուած գանձուն մէջ մաս և բաժին ստացան. որով ամենագեղեցիկ, ճարտար, հանճարաւոր և օգտակար ձեռնարկութիւնքն դիւրացան. վայրկենի մէջ աշխարհիս ծայրէն միւս ծայր լուրերն կայծակի պէս շարունակ երթեւեկելոյ վերայ են. օրերով և շաբաթներով ճանապարհորդութիւնքն՝ երկու և երեք ժամու համառօտեցան. ամիսներով ծովագնացութիւնքն քանի մի օրուան ամփոփուեցան. լեռինք և բլուրք և առապարքն հարթ և հաւասար եղեն. Ջրանցք բացան, երկաթուղիք շինուեցան և այլ շատ մի ձեռնարկութիւնք մարդկային ընկերութեան մեծամեծ ծառայութիւնս մատուցին։*

*Ահա այսպիսի վեհ և հոյակապ գործողութիւնք և սքանչելիք մի միայն ընկերութեանց ձեռօք կատարուեցան ։ Մեր Ազգին փրկութիւնն ալ, այո՛, այլ և այլ* ԿԱՐԵԼԻ *և* ԳՈՐԾԱԴՐԵԼԻ *ընկերութեանց ձեռօք պիտի գտնեմք ։ Առանց ընկերութեան անհնար է շահաւոր գործ մի կատարել ։*

*Սակայն այսպիսի մեծագումար դրամագլխով հաստատուած ընկերութիւնքն մեզմէ շատ հեռի են ։ Եւ որովհետեւ առանց ընկերութեան շահաւոր և օգտակար գործ մի ալ չկատարուիր ըսինք, ուստի մեր ազգին աղքատութեան տանելոյն համեմատ* ԿԱՐԵԼԻ *և* ԳՈՐԾԱԴՐԵԼԻ *չափու մէջ պահեմք, և զատ զատ նիւ-*

թոյ համար այլ և այլ փոքրիկ ընկերութիւնս հաստա-
տեմք , և առ այժմ այս միայն բաւական ու շատ ըլլայ
մեզի։ Առաջին անգամ չ՚աշխատինք որ հազարաւոր և
բիւրաւոր բաժանորդք մէկէն յանկարծ ընկեր գրուին,
այլ շատ է որ մասնաւոր ձեռնարկութեան մի վերայ
քանի մի անձինք միանան և հաստատեն իրենց մէջ
ընկերութիւն մի ։

Մեր Ազգին գլխաւոր պակասութեանց մինն ալ այս
է որ իրեն տկարութեան և աղքատութեան չափը
բնաւ չգիտնալով անկարելի ձեռնարկութեանց ընդու-
նայն յուսով ձեռք կը զարնէ , ու պարապ ժամավաճա-
ռութենէ վերջը , ձեռնարկած գործոյն անհնարու-
թիւնը տեսնելով , իսկոյն կ՚անճրկի, և դեռ ճանապար-
հին սկիզբն կը հոգնի և կը մնայ հոն ։ Այս զրուցածս
շատ անգամ փորձիւ Ազգիս մէջ տեսած ըլլալով , ջա-
նացի հոս այնպիսի միջոցս առաջի առնել , որք ԿԱՐԵԼԻ
և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ ըլլան . ուստի սկսանիմք զանոնք
կարգաւ բացատրել ։

## ԱՌԱՋԻՆ ՄԻՋՈՑ

# ՍԷՐ ԵՒ ՄԻՈՒԹԻՒՆ

Այս Միջոցն հիմնական է . առանց սիրոյ և միու-
թեան անհնարին է օգտակար գործ մի գործել ։ Բայց
ո՞ւր է այն ցանկալի միութիւնն . ո՞ւր է այն ճշմարիտ
սէրն, որով եղբայր ընդ եղբօր իրերաց հետ անքակ
կապուէին և մի և նոյն հոգւով աշխատէին ամենայն
Ազգայինք ի միասին։ Այս նիւթոյս վերայ մեծ մատեան
մի պէտք էր ինձ յօրինել և ապացուցանել՝ թէ ներ-
քին երկպառակութիւնք և այլ և այլ բաժանմունք
Ազգիս ցարդ ո՞րչափ ընդհանուր մարմնոյն վնաս հա-

ռուցին և յետախաղացութեան պատճառ և յառաջադիմութեան արգելք եղեն։

Եւ որովհետև սէրն և միութիւնն աղբիւր է ամենայն բարեաց, ապա պէտք է որ այսու միութեամբ այլ և այլ ընկերութիւնք հաստատուին Ազգիս մէջ, և օր աւուր ծաղկին և զարգանան, և այն ատեն անշուշտ երկպառակութիւնքն ինքնին կը հալածին և բաժանմունքն դարձեալ կը միանան. վասն զի իրերաց հետ ընկերութեամբ կապուած Ազգայինք՝ յաղթող եղեն ամենայն խոչընդոտից, ծաղկեցան և զարգացան։

## ԵՐԿՐՈՐԴ ՄԻՋՈՑ

## ՉԱՓԱՒՈՐՈՒԹԻՒՆ

Ամեն Եկեղեցականաց անհրաժեշտ պարտքն է զանի և զգիշեր յեկեղեցւոջ և ի տունս և ի հրապարակս իսկ առանց աշխատութեան և ակնածութեան քարոզել և խրատել և յորդորել զժողովուրդն, ի բաց թողուլ զգեղխութիւն և զշռայլութիւն, որք են մայր ամեն չարեաց և թշուառութեանց։ Ամեն մարդ իր չափն ճանչնայ, և երբէք իր չափն չանցնի, ի կերակուրս, ի զգեստս, ի բնակարանս, ի զուարճութիւնս և ի կիրառութիւնս։ Երբ մարդիկ իրենց սահմանէն անդին կ'անցնին, ամեն կերպ չարիք և թշուառութիւնք յառաջ կու գան։ Իսկ չափաւորութիւն և խնայողութիւն ընտանեաց երջանկութեան և հարստութեան հիմունքն են։ Քանի՛ քանի՛ հարուստ ընտանեաց որդիք անդաստիարակ բարուք իրենց անկիրթ կրից յագուրդ տալոյ համար հայրենի և ընտանեկան անբաւ հարստութեանց բիւրաւոր ոսկիներն կերան ու մսխեցին։ Այս են անկրթութեան, գեղխութեան և շռայլութեան ցաւալի

հետեւանքն ։ Աւա՜ղ կորստեան այնչափ հարստութեանց որք այլ եւս դառնալիք չունին ։

## ԵՐՐՈՐԴ ՄԻՋՈՑ

# ԺՈՂՈՎԱՏԵՂԻՔ

Եթէ հնար ըլլայ՝ օգտակար է ամեն տեղ՝ ամեն թաղ՝ ուր որ Ազգիս բազմութիւն կայ, բազմութեան համեմատ քանի մի ժողովատեղիս (club), եւ կամ ընթերցարանս բանալ, ուր ընտիր մատեանք եւ այլեւայլ օրագիրք գտնուին։ Ազգայինք հոն ժողովին. հոն միմեանց հետ խորհրդակցին. հոն առեւտրոց, ուսմանց, գիտութեանց եւ արուեստից վերայ խօսին, ամենակարեւոր տնտեսական գիտութեան վերայ խորհին, ուսկից իրենց մեծ օգուտ հարկաւ կը ծնանի ։ Ահա Ցունաց ազգին օրինակն մեր աչաց առջին է։

Եւրոպացիք այլ եւ այլ ընկերութիւնս հաստատելով՝ փոքրիկ հանգամանակութեամբ յուրաքանչիւր քաղաքի չատ մի ժողովատեղիս բացած են. իմաստնոց եւ գիտնոց ուրիշ, վաճառականաց ուրիշ, քաղաքագիտաց ուրիշ, տէրութեան պաշտօնէից ուրիշ, զինուորականաց ուրիշ, արհեստաւորաց ուրիշ, բժշկաց ուրիշ, երկրագործաց ուրիշ, եւ այլն. եւ այսպիսի ժողովատեղիներէն մեծամեծ օգուտս կը քաղեն ։ Ամօթ եւ վա՜յ մեզի, որ տասնցմէ եւ ոչ մին ունինք ։ Այսպիսի ժողովատեղիք պատճառ լինին ազգային միութեան եւ իրերաց հետ սիրով վարուելոյ. այս կերպ՝ անուամբ քանի մի անձինք խելք խելքի կու տան, մասնաւոր ընկերութիւններ կը հաստատեն, եւ անգործ մարդկան ալ գործ ճարելոյ պատճառ կը լինին ։ Միթէ այս ալ անկարելի եւ անգործադրելի է։ Ահա մեզի օրինակ են Մայրա-

քաղաքիս մէջ պանդուխտ Գերմանացիք ։ Տե՛ս թէ այս ընթացքով ո՞րչափ յառաջեցին ամեն առևտրոց մէջ։

Մեզի առ այժմ բաւական է որ՝ ուր Ազգիս բազմութիւն կայ, հոն անպատճառ ժողովատեղւոյ կանգման համար ընկերութիւն մի հաստատուի նոյն թաղին բնակիչներէն, որոնք եթէ գիշերները սրճանոցաց մէջ վատնած դրամոց մէկ փոքրիկ մասը միայն վճարելու ըլլան՝ այս օգտակար ընկերութեան մասնակցելով՝ հարկաւ իրենց ալ բարիք մի կը ծնանի ։ Թաղականք ալ հոգան որ փոքրիկ հանգանակութեամբ հասարակաց ժողովատեղի, կամ ընթերցարան մի բանան. մանաւանդ ուր որ ազգայնոց բազմութիւն կայ. զոր օրինակ յԵէնի Գափու, ի Սամաթիա, ի Գալատ, ի Խասքէօյ, ի Բերա, ի Ղալաթիա, ի Պէշիկթաշ, յՕրթաքէօյ, յԻւսկիւտար և այլն ։ Բնակիչք թաղին ձմեռուան երկայն գիշերներու գէթ շաբթու մէջ քանի մի օր հոն օգտակար խորհրդածութեամբ ժամանակնին անցունեն, քան թէ թամբաանօք և կամ վնասակար խաղամոլութեամբ թղթոց վատնեն զինչս, զհոգի և զմարմին, և որ աւելի ցաւալին է՝ իրենց թանկագին ժամանակն ալ պարապ անցունեն ։

## ՉՈՐՐՈՐԴ ՄԻՋՈՑ

# ԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԴՊՐՈՑԱՑ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՔ

Ի վեր անդր դրածներէս յայտնի տեսնուեցաւ՝ թէ Ազգս ո՛րչափ տկար և ետ մնացած է օգտակար արուեստներէն ։ Ամենեցուն խօսքն, մտածմունքն ու փափագն այս ազգօգուտ գործոյն վրայօք կը պտըտի ։ Ազգիս յառաջադիմութեան համար անհրաժեշտ է, կ'ըսեն,

արուեստից դպրոց մի հաստատել։ Եւ շատ իրաւացի ու ճշմարիտ է զրուցածնին։ Երբոր անցած օրեր «Առաջին քայլ յառաջադիմութեան Ազգիս» անուամբ Երկրագործութեան տետրն հրատարակեցի, Ազգասէրք ոմանք, որոց մէջ կը յիշեմ Մեծապատիւ Տատեան Սիսակ Առաքել Պէյն, յորդորեցին զիս բանիւ և գրով, որ արուեստից բարգաւաճման ազդօգուտ գործոյն վրայօքն ալ առանձին գրուած մի հրատարակեմ։ Եւ արդարև Ազգիս յառաջադիմութեան ամենահարկաւոր և գլխաւոր միջոցն այս արուեստական դպրոցաց կանգնումն է։

Բայց գործ է, այսպիսի թշուառ ժամանակ արուեստական դպրոցի մի կանգման եղանակն և միջոցը գըտնել. թէպէտ ըստ իս այնչափ դժուարին չէ, ինչպէս որ այլք կը կարծեն։ Շատ է որ վարչութիւնք և քանի մի կարող և գործող անձինք կամենան և յանձնառու ըլլան զանիկա ի գործ դնել։ Կը խոստովանիմ՝ թէ այսպիսի գործ մի գլուխ հանել ըստ ինքեան շատ ծանր է. բայց որչափ ծանր ալ ըլլայ՝ ըստ որում այսպիսի արուեստական դպրոց մի ամենահարկաւոր է, զանիկայ կանգնելոյ համար պէտք է ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ միջոցներ ցուցանել։

Արդ՝ արուեստական դպրոցի մի հաստատութեան համար նախ առաջին պէտք է բնակարան, պարզ շէնք և ոչ զարդարուն, բաւական և ոչ հոյակապ։ Երկրորդ պէտք է անոր հաստատուն եկամուտ ճարել, որով դպրոցն կարող ըլլայ հոգալ իր ամեն պիտոյքն։ Վասն շինութեան դպրոցին առ ժամս նորէն շէնք մի շինուելոյն հարկ չկայ. այլ Մայրաքաղաքիս մէջ արդէն շինուած ազգային ընդարձակ շէնքերուն մէջ արուեստից դպրոց մի հաստատել, Հիւանդանոցին կամ Աղքատանոցին մէկ կողմն, և կամ յիւսկիւտար արդէն շատոնց

ի վեր շինուած ընդարձակ ճեմարանին մէջ. և կամ թէ ուրիշ յարմար տեղուանք ընդարձակ ամայի ապարանաց մէջ ։

Այս կերպ ազգօգուտ գործողութիւնք բաւական դրամագլխոյ ալ հարկաւ կարօտութիւն ունին. և երբ այդպիսի դրամագլուխն չկայ, մարդիկ կերպ կերպ հնարք կը մտածեն որ դիւրութեամբ դիտեալ վախճանին հասնին ։ Զոր օրինակ, ինչպէս որ վերը պատմեցի, (Երես. 65.) Լեհացիք իրենց պանդուխտ հայրենակից կարօտելոց համար մէջերնին փոքրիկ հանգանակութեամբ ընկերութիւն մի հաստատեցին, և հրահան լուցկեաց գործարան մի բացին. առանձին նշանադրոշմով հաստատեալ վաճառեցին, և ասկից շատ մեծ շահ և օգուտ ալ քաղեցին ։ Եթէ մեք ալ զնոյն գործելու ըլլամք, ի՞նչ վնաս ունի. միթէ ամօթ և անարգանք է երբոր յարմար տեղի մի գործարան մի շինուի, և հոն Ազգայինք աշխատին, անգործ մարդիկ և տղայք գործեն ու ապրին ։ Այս ալ արուեստական դպրոցին հաստատութեան կը վերաբերի և մեծ օգուտ ալ կրնայ բերել ։ Ահաւասիկ տարւոյ մի մէջ Ազգս միայն հազարաւոր ոսկի կու տայ լուցկեաց համար, թող զօտար ազգս ։ Նմանապէս՝ թէ որ կամենան ծխոյ, օճառի, ճարպամոմի գործարաններ ալ բանան. և առանցմէ որչափ շահ և եկամուտ կը պտղաբերի, այնչափ տղայք ընդունելին արուեստ ուսանելոյ համար ։ Ես այնպէս կարծեմ որ առանցմէ ուրիշ յարմար ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ միջոցս չէ կարող Ազգս գտնել. մանաւանդ քանի որ ընդհանուր Ազգիս աղքատութիւնն մեր աչաց առջև է ։

Բայց ինչո՞ւ, սիրելիք, այսչափ այլևայլ գործարանաց և թերևս դժուարին գործոց ձեռն արկանեմք, և խիստ ճանապարհաց մէջ մտնեմք ։ Ահա մեր առջին

շատ աւելի դիւրին ու կարճ ճանապարհ մի կայ, ուսկից խիստ շահաւոր կերպով և մեծ դիւրութեամբ մեր դիտեալ վախճանին կարող եմք հասնիլ։

Ազգովին ուխտ մի դնենք, ժուժկալութեան ընկերութիւն մի հաստատեմք, և ամեն ամիս օր մի միայն ծուխ (թիւթիւն) չծխելոյ դիտաւորութիւն դնեմք, և նոյն օրուան ծխոյն գինը, որ է մարդ գլուխ քառուն փարա (Տե՛ս յերես 68.) սոյն արուեստական դպրոցին կանգնման նուիրեմք։ Ըստ այսմ եթէ 250,000 Ազգայիններէն հարիւր հազարքն միայն մարդ գլուխ տարւոյն մէջ 15 դահեկան հատուցանելոյ ըլլան, տարեկան գումարը 15,000 ոսկւոյն կը հասնի։ Այսչափ եկամուտ բաւական է հինգ, վեց հարիւր Ազգային տղայոց և երիտասարդաց արհեստ սովրեցնելոյ. ինչպէս, դերձակութիւն, կօշկակարութիւն, տապճագործութիւն, երկաթագործութիւն, դարբնութիւն, քարի և փայտի քանդակագործութիւն և այլն։ Եւ այս ամսական 50 փարայի հաւաքումն ալ շատ դիւրութեամբ և առանց մեծ աշխատանաց կը կատարի, երբ տասնապետք իրենց յանձնուած տասն անձանց ամսականն ժողովելով հարիւրապետաց յանձնեն, հարիւրապետք հազարապետաց, և սոնք ալ ընկերութեան արկեղ. ինչպէս որ «Առաջին Քայլ» մակագրով հրատարակած տետրիս մէջ (յերես 11) այսպիսի դիւրակատար ժողովարարութեան վերայ խօսած եմ։

Բայց դուն, սիրելի ընթերցող, երբոր Ազգիդ այս խեղճ, ողորմելի և աղքատ տղայքն նոյն արուեստական դպրոցին մէջ կը տեսնես, որ քու ամսուան մէջ մէկ օրուան ժուժկալութեանդ և պահեցողութեանդ միայնակ պտուղն է, որպիսի՞ ուրախութիւն պիտի զգաս արդեօք սրտիդ մէջ. և ի՞նչ մեծ մխիթարութեամբ պիտի մխիթարուիս։ Ապա ուրեմն վաղուան

չձգելով այսօրուընէ սկսիր նոյն ժուժկալութեան դի-
տաւորութիւնը դնել. և առաջինն դուն հանդիսացիր
նոյն արուեստական դպրոցին ընկերութեան գլուխ
կանգնելոյ և զայն գործադրելոյ. որոյն փառաց ալ
արժանի ըլլաս։ Եւ որովհետև, Սիրելիք, այսչափ դիւ-
րացաւ Արուեստական դպրոցին կանգնումն, այս նոյն
դպրոցին չքացուելոյն պատասխանատուութիւնն ալ
Ազգային վարչութեան և բարձրաստիճան կարող Ան-
ձանց վրայ ծանրացած է. փախստեան և չքմեղու-
թեան տեղի ամենևին չկայ. բերած պատճառանքն
ամենքն ալ պատրուակք են. կամեցողին արգելք չկայ։
Ընդերկար դատարկախօսութեամբ, շատախօսութեամբ
և ժամավաճառութեամբ աւուրք, ամիսք և տարիք
այսպէս անպտուղ և անգործ կ'անցնին ու կ'երթան։
Աւա՜ղ կորստեան ժամանակաց։ Հարկ անհրաժեշտ է
Ազգիս բարձրագոյն Պաշտօնատարաց գլուխ կանգնիլ,
և ժողովուրդն զօրհանապազ վարժեցնել այսպիսի օգ-
տակար և շահաւոր ընկերութեանց հաստատութեան
փոքրիկ հանգամանակութեամբ, որովք է մի միայն Ազգիս
փրկութիւնն ի թշուառութեանց և ի տառապանաց և
յաղքատութենէ։

Եթէ մեծատունք՝ իրենց զեղխութեան, շռայլու-
թեան, հակառակութեան և վրէժխնդրութեան հող-
ւով վատնած դրամէն մէկ մասն միայն այսպիսի ազգօ-
գուտ գործոց համար պարգևէին, և հաստատուն եկա-
մըտի փոխէին, այսօրուան օրս Ազգն մեր այս թշուառ
վիճակին մէջ չէր արդեօք գտնուէր, և իրենց որդիքն
ալ անշուշտ մեծ օգուտ կը քաղէին։

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՄԻՋՈՑ

# ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ

*Վաճառականութիւնն է արուեստ արուեստից. վասն զի վաճառականին պէտք է գիտնալ թուաբանութիւն, կրկնատումար հաշիւ, աշխարհագրութիւն, քանի մի լեզուս, զանազան դիտութիւնս, աշխարհաց բերքն ու ապրանքն, ազգաց բարքն և սովորութիւնքն, անոնց արուեստները և գործարանները, ամեն պետութեանց ելքն ու մուտքն, թագաւորութեանց և իշխանութեանց ամեն տեսակ արժէթուղթքն, իւրաքանչիւրոց քաղաքագիտութիւնն, միմեանց հետ յարաբերութիւններն, և իւրաքանչիւրոյն զատ զատ դիտմունքն ու վախճանն, իրենց սեփհական ընթացքն և առանձին շահերն, և այլ ասոնց նման շատ մի հմտութիւնք պէտք են վաճառականի միոյ, որ կարող ըլլայ իր վաճառականութեան ընթացքն ապահով և անվտանգ կատարել։*

*Քսան կամ երեսուն տարի առաջ Ազգային հարուստ արհեստաւորք ոմանք, որք ընդհանուր ժողովոց մէջ մեծամեծ Ամիրայից կարգն կը բազմէին, առաւել շահու և վաստակի յուսով թողուցին իրենց արուեստն և վաճառականութեան ձեռք զարկին. բայց բոլորովին անհմուտ և անտեղեակ լինելոյն համար քիչ ատենուան մէջ սնանկացան և յետին աստիճան աղքատացան։ Իսկ հիմա բաւական Ազգային վաճառականս ունիմք յԱնգղիա, ի Փարիզ, ի Զուիցէրի, ի Պօլիս, ի Զմիւռնիա, յԵգիպտոս, ի Թիֆլիս, ի Պարսկաստան, ի Հնդկաստան և այլն. որք պզտիկուց ի վեր քիչ շատ վաճառականութեան մէջ վարժուելով բաւական հմտութիւն ստացան։*

Ազգ մի որ վաճառականութիւն չունի, հասարակօրէն այն ազգն մեռած կը սեպուի . և քանի որ ուրիշ ազգաց հետ տուրևառութիւն չընէր և կղզիացեալ առանձինն կ'ապրի, այնպիսին հարկաւ կամաց կամաց կ'աղքատանայ և ինքնիրեն կ'ոչնչանայ . վասն զի վաճառականութիւնն է միայն պատճառ արուեստից ծաղկելոյն, յառաջանալոյն և ազգաց հարստանալոյն։ Վաճառականն է որ հողագործին ամեն տեսակ բերքն և արհեստաւորաց զանազան գործուածս և ձեռագործս կ'առնու հեռաւոր երկիր կը յուղարկէ . և փոխարէն այլ և այլ տեսակ վաճառս կը բերէ և անոնց կը վաճառէ։ Վաճառականք մարդկային ընկերութեան շատ մեծ օգտակար ծառայութիւնս ըրած են և միշտ ալ կ'ընեն . վասն զի եթէ վաճառականք չըլլինէին , թէ հողագործին և թէ արուեստաւորին վիճակն յորպիսի ողորմելի վիճակ ունէր հասանել . իրենց բերքն ու գործուածն ո՛վ պիտի գնէր . և իրենց հարկաւոր պիտոյքն յօտար և հեռաւոր աշխարհքէն ո՛վ պիտի բերէր։

Ահա՛ տե՛ս Եւրոպացիք ինչպէս վաճառականութեան ձեռօք Օսմանեան պետութեան բոլոր հարստութիւնք կորզեցին , ինչպէս իրենց աշխոյժ աշալրջութեամբ և գործունեայ ճարտարութեամբ և ճարտարարուեստ ձեռագործովք բոլոր մեր քաղաքացեաց ոսկին ժողովեցին , մեր հարուստ արհեստաւորներն աղքատացուցին, և զանոնք սպասաւորս ըրին։ Զօր ամենայն՝ մերայինք Եւրոպացւոց վաճառներուն բեռ բեռ կը բառնան, կը շալակեն, խանութնին կը լեցնեն . հազար կերպ սրտադողով կը վաճառեն , ոսկիներն կը ժողվեն և իրենց միացած ոսկիներն ալ միատեղ խառնելով կ'երթան ամենայն խոնարհութեամբ ինքզինքնին անոնց միշտ երախտապարտ խոստովանելով կը յանձնեն անոնց ձեռքին ։

Ողորմելի՛ տեսարան մեծի Թշուառութեան բնակչաց Մայրաքաղաքիս, եւ առաւել Ազգիս Հայոց ։ Այլ վա՜յ Ազգային վաճառականաց անգործունէութեան, որ իրենց դանդաղութեամբ չկրցան վաճառականութեան ասպարէզն և սահմանն ընդարձակել ։ Վերը տեսանք որ Ազգայինք մեր քանի միլիոն ոսկի ամեն տարի իրենց պիտոյից համար Եւրոպացւոց կը հատուցանեն . ինչո՞ւ իրենք Պօլսոյ ժողովրդեան հետ այլ այլ կարգօք և կանոնօք բաժանորդական ընկերութիւնս չեն հաստատեր զանազան վաճառաց և ապրանաց համար , որով օտարազգիք վաստկելոյ տեղ Ազգայինք շահէին ։ Աւելի լաւ և օգտակար չէ՞ր ըլլար արդեօք որ շատ մի այլ ընտանեաց ապրելոյն և անգործ երիտասարդաց գործ գտնելոյն պատճառ լինէին ։

Տե՛ս անգամ մի քանի՛ տեսակ ապրանք կան, զորս Ազգն ամեն տարի պարտաւոր է գնել ։ Սուրճ, շաքար, բրինձ, ցորեան , գինի, զգեստք արանց և տեսակ տեսակ ասուիք. այլ և այլ մետաքսեղէն զգեստք և զարդք կանանց, սպիտակ և գունաւոր կտաւեղէնք, պատրաստ կօշիկ , կաշի, Թաշկինակ , դուլպայ , գլխանոց (ֆէս), ձեռնոց , հովանոց , զարդք տանց , կահ կարասիք , անագ, ժամացոյց, ճարպամոմ, վիմաձէթ (կազ), օճառ, երկաթ , պնակք, բիւրեղեայք և ապակիք և այլն և այլն ։ Եթէ յարմար տեղեր մթերանոցներ հաստատուէին, և պատշաճ տեսնուած բաժանորդական խանութպանից վաճառքն բաժնուէին, և եթէ իւրաքանչիւր ապրանաց սովորական շահէն հարիւրին քանի մի զեղչելով բանաւոր և արդար և նուազ գնով վաճառուէին, ո՞ր անխելքն է՝ որ նուազ գնով վաճառուածն թողու և երթայ սուղն գնէ ։

Ահա սիրելիք , ասոնք ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ միջոցք են, որ զԱզգն կը հարստացնեն, և երջանիկ առնեն ։

Աւա՜ղ և բիւր եղո՜ւկ մեզ․ այսպիսի ազգօգուտ գործողութիւնք որչափ հեռի են մեզմէն։ Ուստի թէ որ Ազգային վաճառականութիւնն յառաջացնելոյ համար առաջարկուած կարելի և գործադրելի միջոցքն ի գործ չդրուելին, բոլոր պատասխանատուութիւնը նախ վարչութեան պաշտօնէից և կարող անձանց վերայ է, որք Ազգիս կառավարութեան երասանակն իրենց ձեռքն առած են։ Երկրորդ՝ Ազգային վաճառականքն ալ բնաւ ինքզինքնին չեն կրնար արդարացնել և անբասիր առնել, վասն զի միայն իրենց դանդաղութեան պատճառաւ թէ՛ իրենց և թէ այսչափ ընտանեաց ապրելոյն և հարստանալոյն արգելք և խափան եղան և կ'ըլլան։ Ի՞նչ օգուտ մեր տղայոց կերպ կերպ գիտութիւն և ուսումն սորվեցնելոյ համար այնչափ հոգ, խնամ տանել, և շատ մի ալ պարապ տեղ դրամ վատնել, քանի որ մեք չեմք աշխատիր անոնց գործ ճարելու և այսպէս իրենց դատարկաշրջութեան և զեղխութեան մեք իսկ՞ պատճառ լինիմք։

## ՎԵՑԵՐՈՐԴ ՄԻՋՈՑ

# ՍԵՂԱՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ

Ինչպէս որ արուեստից ծաղկելոյն համար վաճառականութիւն պէտք է, նմանապէս վաճառականութեան ալ առանց սեղանաւորի (սառրաֆ), և առանց պանքայի անհնար է յառաջանալ։ Շատ մի դրամագլուխ ունեցող մարդիկ կը գտնուին, որք կարող չեն և չեն համարձակիր անձամբ զանիկայ գործածել և եկամուտ մի շահել։ Ուստի կ'երթան սեղանաւորի մը փոխ կուտան. տարեկան շահ մի ընդունելոյ և որոշեալ ժամանակ փոխ

տուած գումարն յետս պահանջելու պայմանօք։ Նմանապէս արհեստաւորք և վաճառականք ալ իրենց անգործ մնացած դրամագլուխները առ ժամանակ մի կը յանձնեն վաշխիւ սեղանաւորաց մինչև որ հարկաւորութիւն ունենան։

Կալուածատէր մի, կամ արուեստաւոր և կամ վաճառական մի օգտակար և շահաւոր գործոյ ձեռնարկութեան համար դրամագլխոյ պէտք և կարօտութիւն ունեցած ժամանակ՝ կերթայ և սեղանաւորէն փոխ դրամ կը խնդրէ ։ Սեղանաւորն իր ապահովութեան համար նախ և առաջ փոխառուին վարկն (իթիպար) քննել կը պարտաւորի, որ գիտնայ՝ թէ արդեօք վստահութեան արժանի անձ մի է . կամ թէ պայմանեալ ժամանակին կարէ՞ հատուցանել փոխ առած դրամագլուխն ։ Եւ ըստ այսմ փոխ առնողին՝ իւր ստացուածոց արժէքին և անձնական հանգամանաց վերայ վստահանալէն վերջը փոխանակագրով, կամ պարտամուրհակաւ, և կամ արժէտոմսակաւ մի փոխ կուտայ կանխիկ եռամսեայ տոկոսն զեղչելով (ռեհին)։ Ասոնք են սեղանաւորին ընկերութեան ըրած մեծ ծառայութիւններն. անկարող անձանց մեռեալ դրամագլխոց կենդանութիւն կուտայ. անգործ մնացած դրամոց շահ կը հատուցանէ, և փոխատուութեամբն վաճառականները և արհեստաւորները այլ և այլ ծանր նեղութիւններէ կ'ազատէ ։ Եւ այս է արդար սեղանաւորութիւնն ։

Ազգի միոյ յառաջադիմութեան սեղանաւորութիւնն ամենահարկաւոր է։ Վասն զի Ելևմտական կամ դրամական գիտութիւնն (finance) հիմակուան ժամանակս այնպիսի գաղտնի արուեստ մի եղև, որ կեցած տեղէն կը թափանցէ . հեռաւոր աշխարհքներ պտըտելով կը զննէ ազգաց սովորութիւնները , արուեստից ընթացքը կը դիտէ, հարուստ մեծատանց կրկին բանալեաց ներ-

քեւ դեռնափոր տեղուանք պահած ոսկիներն կը համ-
րէ. ամեն անհատին ծոցն քանի ոսկի ըլլալն կը գրուցէ.
վերջապէս երկրիս վերայ բնակող բովանդակ ազգաց և
ազանց ինչքն, հարստութիւնն, ճոխութիւնն և նիւ-
թական և քաղաքական կացութիւնն սեղանաւորներէ
կախուած են. Միով բանիւ վաճառականաց կեանքն
ու մահն անոնց ձեռքն է.

Եւրոպացիք առհասարակ այս գիտութեան մէջ շատ
յառաջացած են. և ի մասնաւորի նաև Հրէից ազգն, որ
իւր բնատուր աչալրջութեամբն և այսու դրամական
գիտութեամբն անբաւ հարստութիւն ձեռք բերած է.
Բոլոր թագաւորութիւնք և ամեն ազգք գրեթէ սեղա-
նաւորաց գերի եղած են. Իսկ մեք այս գիտութեան
և ոչ նախագրան մէջ ոտք կոխած եմք. վասն զի ոչ
կատարեալ սեղանաւոր մի, և ոչ ալ ազգային կանոնա-
ւոր Պանքայ մի ունիմք. Ջեմ ուզեր անիրաւել Մեծա-
պատիւ Նիւղէլեան և Հաճեան ընկերութեան զանց ը-
նելով զայն յանուանէ յիշատակել. վասն զի թէ ի
Պօլիս և թէ յԵւրոպա հռչակուած է այն ընկերու-
թեան գործն.

Ո՞ տայր թէ այսպիսի Ազգային սեղանաւորք օր ա-
ւուր շատնային. Նիւղէլ-Հաճեան ընկերութեան մասա-
նաւոր յատկութիւնն այս է, որ իւր դրամատնեակն Ազ-
գային երիտասարդաց դպրոց մի եղած է. ուր քստ
չափու կարողութեան իւրաքանչիւր ոք սեղանաւորու-
թիւն կը սորվի և կը յառաջանայ. Բայց առաւել գո-
վութեան արժանի լինէին այն ընկերութեան գլուխք
և տնօրէնքն եթէ Ազգիս մէջ կատարեալ սեղանաւո-
րութիւնն յառաջացնելոյ և զարգացնելոյ համար աւելի
մեծ ընկերութիւն մի կանգնէին, որով վաճառականքն
մեր մեծ դիւրութիւն և շահ ստանային. մինչ հիմայ
գերի եղած են օտարազգի սեղանաւորաց, որք զօր-

հանապազ կը քամեն անոնց հարստութիւնն և կը քերեն իրենց ոսկրները։

Արդարև ողորմելի՜ք եմք ։

Ազգիս վաճառականաց յառաջանալոյն և ծաղկելոյն համար անհրաժեշտ պէտք է նաև Ազգային Պանքայ մի ունենալ․ Ընթացք Պանքայից նոյն և նման է բոլորովին եւրոպականներուն․ միայն այս առաւելութիւն ունին, որք հասարակաց վստահութիւնն գրաւած ըլլալով իրենց ունեցած դրամագլխոյն կրկնապատիկ արժէքով տոմսեր կրնան հանել․ որով Պանքայից վերաբերեալ գործողութիւնք ընդարձակ և շահաւոր կերպիւ կը կատարուին։ Այսպիսի Պանքայք շատ անգամ կառավարութեանց հետ փոխատուութեան յարաբերութեան մէջն ալ կը գտնուին։

Բայց դժուարին է յայսպիսի թշուառ ժամանակի այնպիսի մեծ գործ մի առաջարկել և գլուխ հանել․ և ես ալ կը վկայեմ։ Բայց իմ խորհուրդս այն չէ՝ որ միլիոնաւոր ոսկւով ամենամեծ Պանքայ մի բացուի․ այլ ինչպէս որ բնութեան մէջ ամեն բան պզտիկէն կը մեծնայ, այսպէս ալ մեր Ազգային յառաջադիմութեան համար առաջարկուած միջոցքն ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ լինելոյ համար քիչէն սկսանելու են։

Ես առ ժամս կ՚առաջարկեմ հազար հոգւոյ բաժանորդական ընկերութիւն մի․ իւրաքանչիւր բաժինն հարիւր ոսկւով․ երբ հարիւր հազար ոսկւոյ դրամագլխով Ազգային Պանքայ մի բացուելու ըլլայ, քանի՞ ընտանիք արդեօք կ՚ապրին, ո՜րչափ երիտասարդք գործ կը գտնեն․ և Ազգային վաճառականքն ալ որպիսի՜ մեծ դիւրութիւններ և ո՜րչափ մեծ շահ ու վաստակ կ՚ըստանան։ Անոնք որ վաճառականութեան ձեռք զարկած են, շատ աղէկ կը հասկնան Ազգին այսպիսի Պանքայի մը հաստատութեան մեծ կարօտութիւն ունենալը։

Այսպիսի Պանքայի ընկերութեան հաստատութիւնն անկարելի չէ, վասն զի բովանդակ Մայրաքաղաքիս Հայազգի բնակիչներէն հազար անձինք հարկաւ կը գըտնուին. և հարիւր հազար ոսկի դրամագլխով Պանքայ մի կրնայ հաստատուիլ, որով սկիզբն կը դրուի գործողութեանց, և օր աւուր կը յառաջեն և կը զարգանան։ Իսկ թէ որ այս ալ դժուարին ըլլայ, այն ժամանակ յիսունական ոսկւով երկու հազար բաժանորդք փնտռուին և ընկերութիւն մի հաստատուի, որով Ազգային Պանքայի հաստատութիւնն դիւրանայ. վասն զի ինչպէս որ առաջ ալ զրուցեցի, այսպիսի օգտակար և չահաւոր ձեռնարկութիւնք Ազգի միոյ կեանք և կենդանութիւն կը պարգևեն։

Այլ սեղանաւորք ընդհանրապէս պիտի գիտնան՝ թէ իրենց վախճանն Ազգային վաճառականաց ձեռք տալ և օգնել է, և այսպէս վաճառականաց ձեռօք արհեստաւորաց դիւրութիւն ընծայել, և ոչ թէ ծանր վաշխիւ դրամ փոխ տալով վաստակնին աւելցնել, և իրենց անձնական շահն միայն դիտել վաճառականաց կործանմամբն։

Այլ ի՞նչ զրուցեմ որ զօրաւոր և ազդու խօսքերով կարող ըլլամ համոզել զամենքն, որ դանդաղութիւնն մէկ կողմ ձգեն, և ժամավաճառութիւնն թողուն, և այսպիսի ազգօգուտ գործողութեանց ժամ մի յառաջ ձեռք զարնեն։

Բարձրաստիճան Եկեղեցականք և աշխարհական կարող Անձինք, վարչութիւնք և վաճառականք, ամենքն ալ ծանր և մեծ պատասխանատուութեան ներքև են, և բնաւ չեն կարող ինքզինքնին անպարտ առնել և արդարացնել, երբոր անհոգութեամբ իւրեանց այսպիսի ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ Ազգիս յառաջադիմութեան միջոցներն զանց առնեն։ Այո՛ արդարև մեծ անար-

գանք են մեզ, որ մինչ Ցոյնք Մայրաքաղաքիս մէջ քանի մի Պանքա կը հաստատեն. Ազգայինք անգործ կայնած կը կենան, և ընդունայնախօսութեամբ իրենց ժամանակն կ'անցունեն ։

## ԽՕԹՆԵՐՐՈՐԴ ՄԻՋՈՑ

# ԽՆԱՅՈՒԹԵԱՆ ԱՐԿՂ ԿԱՄ ԱՊԱՀՈՎՈՒԹԵԱՆ ԳԱՆՁԱՐԱՆ

Տնտեսական գիտութեան երևելի ճիւղ մի ալ Խնայութեան Արկղն է ։ Իւրաքանչիւր մարդ իր ապագայն ապահովցնելոյ համար իր վաստկածէն պէտք է քիչ մի դրամ մէկ կողմն դնէ, որպէս զի երբ յանկարծ դժբաղդութիւնք, աղէտք և թշուառութիւնք միմեանց ետև յաջորդեն, կարող ըլլայ ինքզինքն փրկել ։

Եւրոպիոյ ամեն ազգք և ամեն քաղաքք իրենց անտէր աղքատաց և գործաւորաց ինչքն և դրամքն ապահովելոյ համար կառավարութեանց հսկողութեան ներքեւ այսպիսի մասնաւոր պաշտօնատեղիս և խնայութեան գանձարանս բացած են, ուր ամեն գործաւոր և արուեստաւոր իւր վաստակէն քիչ մի դրամ աւելցնելով, 10, 20, 50, 100 դահեկան, կ'երթայ կը յանձնէ պաշտօնէից։ Եւ նոյն խնայութեան արկեղ օրինաց համեմատ դրամագլխոյն վերայ տարեկան վաշխ մի կ'աւելնայ, և ուզած ժամանակ իրեն կը տրուի ։ Այս կերպով Եւրոպացիք տարիներէն վերջն մեծամեծ գումարս կարող եղեն աւելցնել, և իրենց որդւոց և ընտանեաց հարուստ ժառանգութիւն թողուլ ։

Հաշիւ ըրած են որ եթէ արհեստաւոր և կամ գործաւոր մի իւր նոր ծնած որդւոյն համար տարւոյն մէջ

500 դահեկան, կամ շաբաթէ շաբաթ իբր 9 դահեկան քառասուն տարի շարունակ խնայողական արկեղ յանձնէ, և ըստ օրինաց նոյն արկեղ՝ 4 առ 100՝ տարեկան տոկոսն վրան բարդուի, այն ծնած տղայն քառասնամեայ հասակին մէջ 95,000 դահեկան դրամագլխոյ տէր պիտի ըլլայ։

Այսպիսի խնայութեան կամ ապահովութեան արկեղաց Ազգն մեր շատ պէտս ունի։ Ժողովուրդ մեր գրեթէ ամենքն ալ աղքատացած են. ծառայք, պախինք, գործաւորք և արուեստաւորք ամենքն ալ գիշեր ցերեկ կ'աշխատին, և խնայութեան արկղ կամ գանձարան մի չըլլալուն պատճառաւ վաստակածնին կ'երթան արժէթղթոց կը փոխանակեն և այսպէս կը փճանան։ Նոյնպէս այրի կանանց և որբ մանկանց ժառանգութիւնքն ըստ այսմ փճացան. և կամ որոց որ հաւատացան՝ անոնք ալ սնանկացան, և ողորմելիքն մերկ կողոպուտ մնացին։

Ազգային վարչութեանց անհրաժեշտ պարտքն է այսպիսի ազգօգուտ գործոց և հաստատութեանց ձեռն արկանել, թէ որ Ազգիս յառաջադիմութեան ճշմարտիւ ցանկացողք և փափագող են։ Եթէ յանձնառու ըլլան Ազգիս վարչութեանը, նախ աղքատաց պարտքին խնամ տանել. ապա թէ ոչ մեծ և ծանր պատասխանատուութեան ներքև են։

Այն ողորմելի բեռնակիրն որ գիշեր ցերեկ արիւն կը քրտնի, ծանր ծանր բեռին ներքև կը հեծէ, հոգին բերնին կու գայ, և իւր աշխատանաց չնչին վարձ մի կ'ընդունի, այն ողորմելին՝ կ'ըսեմ, ինքզինքն զրկելով օրն ի բուն հացին և սոխին եւեթ կը շատանայ, որպէս զի իւր հայրենիքը անտանելի թշուառութեանց, զրկանաց, աղէտից և յափշտակութեանց մէջ թողած իւր ընտանեաց և զաւակաց օգնութեան համար քանի մի

դահեկան աւելցնէ, և ապահովութեան տեղի մի չըլ-
լալոյն պատճառաւ կամ կը դողցնէ և կամ անխիղճ և
անիրաւ ձեռք զոյն կը յափշտակեն. որպիսի՜ քարաց-
եալ սիրտ պիտի ըլլայ, որ իւր պաշտամանէն պարտա-
ւորեալ ըլլալով առ այսպիսի թշուառացելոց բնաւ եր-
բէք չօգնէ և անտես և զանց առնէ։

Ամեն թաղ, ամեն եկեղեցեաց մէջ այսպիսի խնա-
յութեան արկեղք կամ գանձարանք պէտք է որ հաս-
տատուին ընդ իշխանութեամբ և ընդ հոկողութեամբ
Ազգային վարչութեանց, և անոնցմէ ապահովացեալ և
երաշխաւորեալ. որպէս զի ողորմելի աղքատ ժողո-
վուրդն համարձակի և չարթէ չաքաթ աւելցուցած
դրամը բերէ և յանձնէ, և ըստ օրինաց խնայութեան
արկեղաց մանաւոր վարչութեան ձեռօք սասնայ պէտք
եղած ընդունելութեան և ապահովութեան գիրերն։ Այն
օր ինչպէս հանգիստ սիրտ քնանայ այն տառապեալ
այրի կինն, այն աշխատեալ ողորմելի ծառայն, այն վաս-
տակեալ բեռնակիրն երբոր տեսնէ՛ թէ այնչափ դըժ-
ուարութեամբ իւր աւուրչէքէն խնայած դրամն կորըս-
տեան վտանգէն բոլորովին ապահով է։

Սակայն դանձարանին վերատեսչաց կը վերաբերի
խնայութեան արկեղաց մէջ այս օրինակ ժողոված
դրամներն անպտուղ չթողուլ, այլ ապահով ճանապար-
հաւ և չափաւոր վաշխիւ առուտուրաց և վաճա-
ռականաց փոխ տալ. և շահած տոկոսիքն դրամագըլ-
խոյն վերայ տարւոյ ի տարի միշտ յաւելուլ։

Ահա առանք և այսպիսի կարևոր և ազգօգուտ
ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ գործողութիւնքն են, զորս
Ազգիս վերնագոյն իշխանութիւնքն թէ Եկեղեցականք
և թէ Աշխարհականք պարտին միշտ ժամ մի յառաջ
ի գործ դնել, յաղթելով միշտ ամեն արգելքներն
և խոչընդոտները։

### ՈՒԹԵՐՈՐԴ ՄԻՋՈՑ

# ԱՐՀԵՍՏԱՒՈՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

*Որովհետև մեծագումար՝ դրամագլխով հաստատուած ձեռնարկութիւնք մեզմէ շատ հեռի են, անոր համար մեր աղքատ ժողովրդեան* ԿԱՐԵԼԻ *և* ԳՈՐԾԱԴՐԵԼԻ *և շահաւոր ուրիշ կերպ ընկերութիւն մի աւ առաջարկեմ։ Երբ աղքատ գործաւորաց և արուեստաւորաց խումբ մի իրերաց երաշխաւոր և պատասխանատու լինելով, իւրաքանչիւրն շաբաթական կամ ամսական խնայութեամբ որոշեալ փոքրիկ գումար մի կը վճարէ։ Եւ այսպէս երբոր նոյն ընկերութիւնը բաւական դրամագլխոյ մի տէր կ՚ըլլայ, կրնայ յայնժամ՝ ըստ օրինի Խնայութեան արկեղաց և փոքրիկ Գանձուց կամ սեղանաւորաց՝ գործածել իւր գումարը, թուղթ կտրել, բաժանորդաց փոխ տալ, առևտրական գործոյ ձեռք զարնել, և ասոնցմով մեծամեծ դրամագլուխ ձևացնել։*

*Եւրոպիոյ ամեն կողմն քանի՛ քանի՛ այսպիսի արհեստաւորաց ընկերութիւնք հիմնեցան և քիչ ժամանակի մէջ այնքան ծաղկեցան և յառաջեցին մինչև մեծամեծ սեղանաւորաց և Գանձուց հաւասարեցան։ Վասն զի այն արհեստականաց ընկերքն շատ աղէկ համոզուեցան որ եթէ առանձինն մնան, շահաւոր գործ մի չկարենան պիտի գործել. և ոչ փոքրիկ փոխառութիւն մի առնուլ. իսկ թէ ընկերութեան գրուին և շիլլին մի (5 ½ դահեկան) մուտք, և երեք բէնս (55 փարա) շաբաթական վճարեն, տասն տարւոյն մէջ 100 անգղիական ոսկի լիրայի դրամագլխոյ միոյ տէր պիտի ըլլան։ Այս*

հաշւոյն վերայ խոկոյն հաստատեցին իրենց մէջ այն օգտակար Արհեստաւորաց ընկերութիւնն, և այնուհետև սկսան ծախքերնին չափաւորել, աշխատիլ, և իրենց նիւթական և բարոյական կացութիւնն բարեկարգել։ Այնուհետև մարդկային ընկերակցութեան սէրն ու զգացումն կրկնապատկեցաւ իրենց սրտից մէջ. զիրար ատելէն քաշւեցան. իւրաքանչիւր բաժանորդք Ընկերութեան միայն շահն մտածեցին, և ոչ երբէք անձնական օգուտն. վասն այսորիկ մեծամեծ հարստութեանց և դրամագլխոց տէր եղեն։

Բիւր երանի Ազգացն այնոցիկ, որոց հասարակ ռամիկ ժողովուրդն իսկ այսպիսի հանճարոյ և իմաստութեան, աշխատութեան և հարստութեան արժանացան։ Որ ընդհակառակն երբ հարուստ մեծատունք մեր՝ այս ամեն իմաստութենէ հեռի գտնուեցան, ո՞ւր կը մնան հասարակ ժողովուրդն մեր։

Ուստի թէ որ կարելի լինի պէտք է ամեն թաղ այսպիսի Արհեստաւորաց ընկերութիւններ հաստատել նոյն թաղին անձանցմէ։ Եւ ժողոված դրամագլխով նախ և առաջ նպարավաճառի (Պաքքալ) խանութներ բանալ, ուր ամեն տեսակ նպարաց ընտիր և ազնիւքն գտնուին, և իւրաքանչիւր ապրանքի վերայ բանաւոր, արդար և վերջնական որոշեալ գին դրուի։

Երկրորդ՝ իւրաքանչիւր թաղին բնակչաց բազմութեան համեմատ հացագործի փուռնք բացուին։

Երրորդ՝ թէ որ կարելի ըլլայ, Մսավաճառի եւս խանութք բացուին։

Չորրորդ՝ կրնան եւս իւրաքանչիւր թաղին այլ և այլ փողոցաց մէջ ծխոյ (Թիւթիւն) խանութս բանալ։ Եւ ասոնց նման շատ մի այլ շահաւոր և օգտակար ապրանաց խանութս բանալ իրենց դրամագլխոյն կարողութեան չափ։

Հինգերորդ՝ իրենց մէջէն այնպիսի հաւատարիմ անձանց յանձնեն այն ամեն խանութից վերատեսչութիւնն, որք յաւէտ ընկերութեան շահն քան թէ իւրեանց անձնական օգուտն փնտռեն։

Ահա այսու ճանապարհաւ այսչափ հազարաւոր ոսկւոյ շրջանն իրենց ձեռօք պտոյտ տանելով եղած շահն իրենց մէջ միայ. և շատ մի այլ ընտանիք կ՚ապրին։

## ԻՆՆԵՐՈՐԴ ՄԻՋՈՑ

# ԳՈՐԾԱՐԱՆՔ

Ազգիս յառաջադիմութեան և անգործ մարդկան գործ ճարելու միջոցներէն մինն ալ ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ գործարանաց կանգնումն է։ Արդարև մեք բնաւ կարողութիւն չունիմք Եւրոպացւոց նման մեծամեծ գործարանս կանգնելոյ. բայց կարող եմք մեր կարողութեան համեմատ այլ և այլ օգտակար փոքրիկ գործարանս բանալ. զորօրինակ օճառի, ճարպամոմի, երկաթագործութեան, հրահան լուցկեաց, տախտակ աղօցելոյ, ներկարարի, կօշկաց, կտաւեղինաց, խմորեղինաց, Թարմ բանջարեղէնս պահելոյ, և այլն և այլն։ Այսպիսի գործարանաց հաստատութեան համար պէտք է բաժանորդական մասնաւոր ընկերութիւնս հաստատել, որով շատ մի անգործ և դատարկաշրջիկ անձինք աշխատին և կարող ըլլան թէ ինքզինքնին և թէ ընտանիքնին ապրեցնել։ Այսպիսի գործարանք մեծ դրամագլխոց կարօտ չեն. շատ է որ քանի մի գործունեայ անձինք դէթ իրենց շահուն համար գլուխ անցնին և ողորմելի Ազգիս յառաջադիմութեան պատճառ ըլլան։

Որչափ փափագելի են այնպիսի ազգօգուտ գործողութիւնք։

## ՏԱՍՆԵՐՈՐԴ ՄԻՋՈՑ

# ՎԱՐԺԱՐԱՆՔ ԱՂՋԿԱՆՑ

*Ազգիս յառաջադիմութեան ամենահարկաւոր և առաջին գլխաւոր միջոցաց մին ալ աղջկանց վարժարաններ հաստատելն է։ Յիրաւի ծաղկեալ և զարգացեալ ազգաց և ընտանեաց սկզբնապատճառն աղջիկ զաւակաց բարւոք դաստիարակութիւնն է. և ասոնցմէ միայն կախուած է Ազգի մը բաղդն և բարեկեցութիւնն։ Վասն զի այսպիսի դպրոցաց մէջ սնեն աղջիկ զաւակ իրեն մայրենի լեզուին հետ Աստուածպաշտութիւն կը սորվի, դաստիարակութիւն և բարոյական կրթութիւն կ'առնու, բաւականացու ուսմամբ և գիտութեամբ իւր միտքը կը մշակէ. կար, ձեռագործ և տանեգործ կը սորվի, որպէս զի իւր ապագայ վիճակին ալ կարող ըլլայ բարւոքել։ Աղջկանց բարւոք դաստիարակութիւն ընդունելով իրենց որդւոց ալ բարեկեցութեան պատճառ կ'ըլլան։ Վասն զի զաւակ մը ծնած օրէն մինչև իրեն մայրն կը տեսնէ. մօրմէն նախ մայրենի լեզուն կը սորվի. մօր խօսքն զաւկին մտաց մէջ փակչուն կը տպաւորի. մօր ընթացքն հանապազ կը նկատէ. միով բանիւ ըստ ամենայնի իւր մօր օրինակին կը հետևի։ Եթէ մայր մը աղէկ կրթութիւն առած և բարւոք դաստիարակուած չըլլայ, եղո՛ւկ այնպիսի զաւակաց և վա՛յ այնպիսի Ազգին։*

*Յիրաւի Մայրաքաղաքիս մէջ գրեթէ ամեն թաղ աղջկանց վարժարանք կան, բայց մեծագոյն մասամբ կիսկատարք են և Ազգիս ակնկալութիւնն չեն կարող լցուցանել։ Աւելի ցաւալին այն է որ աղջկանց համար գիշերօթիկ վարժարան մի ալ չունինք. և վասն այսո-*

րիկ Ազգայինք պարտաւորած են իրենց աղջիկ զաւակները օտար ազգաց գիշերօթիկ դպրոցաց տալ։ Ամօթ մեզի և եղուկ Ազգիս որ Մայրաքաղաքիս մէջ քառասուն հազար Հայազգի ընտանեաց համար և ոչ գիշերօթիկ աղջկանց դպրոց մի ունիմք ։

Այսպիսի վարժարանաց յառաջադիմութիւնն և կանգնումն որչափ ալ Ազգային վարչութեան կը վերաբերի, հանդերձ այսու Ազգիս զգաստ և երկիւղած Տիկնայքն ալ աղջկանց կրթութեան մասին շատ մեծ և ծանր պատասխանատուութեան ներքև անկած են։ Վասն զի խիստ մեծ դիւրութեամբ և փոքրիկ ընկերական հանգանակութեամբ մեծամեծ օգուտս անշուշտ կրնան քաղել, եթէ մէջերնին մասնախումբեր հաստատուին. որ դէթ ամսուան մէջ աղջկանց վարժարանաց այց ելլեն, անոնց ընթացքն քննեն, ուսմունքնին և ձեռագործնին նային. և մանաւանդ ջանան ազնուազգի և բարեկեցիկ ընտանեաց օրիորդաց համար կարգաւորեալ գիշերօթիկ վարժարան մի բանալ, և Ազգս օտար դաստիարակներէն ազատել ։

Մայրաքաղաքիս մէջ սոսկ իրենց շահուն համար Եւրոպայի ազգաց բացած դպրոցները ի մի կողմն կը թողումք. մեր դրացի Յունաց ազգէն օրինակ առնումք. որք քաղքիս մէջ ամեն տեղ աղջկանց դպրոցս հաստատեցին և գիշերօթիկ վարժարանս կանգնեցին. Ճարտարարուեստ և նուրբ ասղնեգործ և ձեռագործ արհեստներ կը սորվեցնեն, և կրնամ ըսել որ Եւրոպայէն եկած ձեռագործներն իսկ կը գերազանցեն և օր աւուր ծաղկելոյ և յառաջանալոյ վերայ են. և այս ամենայն մի միայն ազդաւէր Տիկնայց ոմանց ջանից արդիւնքն է։

Ո՞ւր են մեր զգաստ և իմաստուն Տիկնայք և Օրիորդք, որք իրենց պարկեշտ և երկիւղած ընթացիւք,

քաղ և ճարտարարուեստ ուղնենկար ձեռագործովք համբաւնին տարածած էին. ընդէ՞ր այսպէս անգործունեայ կեանք կը վարեն. ինչո՞ւ ընկերական հանգանակութեամբ իւրաքանչիւր թաղի աղջկանց վարժարանաց յառաջադիմութեան չեն օգներ, չեն ջանար, չեն աշխատիր։ Արդեօք լսած և տեսած չե՞ն թէ Եւրոպացի ազնուական կանանց գործունէութեամբ ո՛րչափ մեծամեծ արդիւնք յառաջ եկած են։ Նոցա ջանքով միայն անկելանոցք, որբանոցք և աղքատանոցք հաստատուած են. բայց մեք այսչափը չեմք պահանջեր. գոնէ Ազգային Տիկնայք մեր առ այժմ հաստատած դպրոցաց աւելի զարգացման, աղջկանց դաստիարակութեան և ապագայ բարեկեցութեան պատճառ ըլլան, և գիշերօթիկ դպրոց մի կանգնելոյ ջանան, որպէս զի Ազգայինք չպարտաւորին իրենց աղջիկ զաւակներն օտար ազգաց ձեռքին յանձնել, և այնչափ վճարած ոսկւոց հետ իրենց որդիքն ալ օտարացուցանելոյ պատճառ ըլլալ։.

Ցիրաւի՛ հասարակ ժողովրդեան աղջիկ զաւակաց այսչափ անկիրթ և անուսումն մնալոյն և զանազան թշուառութեանց մէջ գլորելոյն մի միայն պատճառ մեր Տիկնայց անհոգութիւնն և անգործունէութիւնն է. իրենց զուարճութեանց և հանգստութեանց համար շատ մի ժամանակ և դրամ կը վատնեն, բայց այսպիսի ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ ազգօգուտ գործոց համար և ոչ ժամ մի կ՚ընծայեն։

Խասգիւղի Որբանոցը մեզի կը յայտնէ թէ ինչ կրնայ գործել նաև կնոջ մի ջանքն։ Այդ գեղեցիկ հաստատութիւնը Ազգասէր և Երկիւղած Սրբուհի Մայրապետին հիմնարկութիւնն է, որ աղքատ որբ կամ լքեալ աղջկունս ժողովելով սկսաւ անոնց կրթութիւն տալ և օգտակար կանայի արհեստներ սովրեցնել. և կարևոր

ծախքն հոգալու համար ոչ թէ Մայրաքաղաքիս մէջ
միայն հապա հեռաւոր քաղաքներ ալ Ազգայնոց Նուէր-
ները հաւաքելու շրջելու, և անձամբ տեսչութիւնը
կը կատարէ. բայց այդ ուղևորոյը հազիւ 25 կամ 30
օրուորդի կը բաւէ. մինչդեռ Ազգիս մէջ հարիւրաւոր
աղքատ օրիորդներ կան, որք այնպիսի խնամոց կը կա-
րօտին։

Ո՜ր կողմն դարձունեմք զաչս մեր, ուրիշ բան չեմք
տեսներ բայց եթէ թշուառութիւն թշուառութեանց
վերայ, որք յանհոգութենէ և յանգործութենէ միայն
յառաջ եկած են։ Ինչպէս որ վերը տեսանք (յերես 34)
Ազգային կանայքն մեր իրենց զգեստուց, զարդարա-
նաց և պճրանաց համար տարւոյն մէջ միլիոնի մօտ
ոսկի կը հատուցանեն. մէկ որ Կուրաքանչիւր Տիկին և
Օրիորդ իւր զգեստուց և զարդարանաց տարեկան ծա-
խուց առ նուազն հարիւրին հինգ դահեկանը աղջկանց
դաստիարակութեան համար վճարէ, ահա հարիւրաւոր
զաւակաց բարեկեցութեան պատճառ պիտի ըլլայ իւր
փոքրիկ նուէրովն։

Գրեթէ սովորական եղև ամեն դպրոցաց մէջ հասա-
րակ ժողովրդեան աղջկանց ալ Գաղղիերէն լեզուն
ուսուցանել. անոր համար շատ մի ալ ժամանակ կո-
րուսանել։ Այսպէս աղջկանց Գաղղիերէն սովրեցնելոյն
ջանից վախճանն ինչ ըլլալը դեռ կարող չեղէ իմանալ։
Երբ հասարակ ժողովրդեան աղջկանց Գաղղիերէն և
ուրիշ օտար լեզուներ կ'ուսուցանեմք և արհեստ մի
չեմք սովրեցներ, արդիւնքն ուրիշ բան չէ բայց եթէ
դատարկաշրջութեամբ փողոցէ ի փողոց, սրճանոցէ ի
սրճանոց, տանէ ի տուն շարունակ երթևեկել և դրամ
մսխել և բան մի չշահիլ։ Ուստի ըստ իս հասարակ
ժողովրդեան աղջիկ զաւակաց լեզու սովրեցնելն պա-
րապ ժամանակ կորուսանել է. շատ աղէկ և աւելի

օգտակար և շահաւոր չինի, եթէ անոր տեղ ճարտար գեղեցիկ ձեռագործ, ասեղնագործ և լաւ կար գիտնան, որով միայն իրենց ապագայ կենաց պահպանութեանը ձեռնտու կրնան ըլլալ ։

## ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ ՄԻՋՈՑ

# ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԵՒ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՊԱՆՔԱ

Մինչև ցայս վայր գրածս և առաջարկած միջոցս, մասնաւորապէս Մայրաքաղաքիս Հայազգի բնակչաց յառաջադիմութեան օգուտ կարող են մատակարարել. բայց քանի որ Հայոց Ազգին ընդհանրութիւնը ի սփիւռս աշխարհաց ցրուեալ կայ, մասնաւոր դարմանք և հնարք սակաւ օգուտ կարեն մատակարարել ընդհանրութեան Ազգիս ։

Ազգիս արդեան վիճակն նման է բոլորովին այն դըժբաղդ նաւուն, որ ալեկոծեալ ծովուն մէջ սաստիկ փոթորիկի պատահած, ամենի ալեաց խաղալիկ եղած, կայմերին կոտրուած, առագաստքն պատառուած, նաւապետն և նաւաստիքն յուսահատած և շուարած կ'սպասէ ծովասոյզ ըլլալոյ, և ահա յանկարծ խաղաղ ծովածոցի մի կը պատահի, և նաւաստիք ամենայն ջանիւ իրենց փրկութեան համար կը ձգեն ծովուն մէջ ամենէն մեծ և զօրաւորագոյն խարիսխն, զոր անդացի նաւավարք իրաւամբ Ձեռն փրկարար կ'անուանեն ։

Ցար և նման է բոլորովին համօրէն Ազգիս Հայոց ընդհանուր վիճակն. ամեն կողմէն սաստիկ մրրիկք և փոթորիկք կ'սպառնան, աղքատութիւն, տգիտութիւն, չքաւորութիւն, ծուլութիւն, դանդաղութիւն, անմիա-

ծութիւն, անհոգութիւն, անմիաբանութիւն, բաժան-մունք բաժանմանց մէջ և այլն. որք ամէն կողմէն պատեալ պաշարեալ Ազգային նաւն ընկղման վտանգին հասուցած են։ Վասն այսորիկ Պատրիարքական իշխանութիւնք, Ազգային ընդհանուր ժողովք և վարչութիւնք, գաւառական և թաղական ժողովք, բարձրաստիճան Եկեղեցականք, իշխանք և իշխանապետք, ամենեքին յուսահատած և անճրկած ի՛նչ ընելնին չեն գիտեր. շուարած կեցեր կը նային, վերին Նախախնամութեան աչքերնին տնկած չեն կարող իրաց դեղ և դարման մի ճարել և ելք մի գտնել։ Ի՞նչ ընելու եմք ուրեմն։

Առաջին և գլխաւոր միջոց յառաջադիմութեան Ազգիս՝ ընդհանուր ազգային միութիւնն է՝ բոլոր վերը։ Բովանդակ տեղերաց վերայ որչափ Ազգայինք կան, իրերաց հետ անքակտելի կերպիւ կապուելու են։ Այս դրութիւնը որչափ անհնարին երևի այլոց, նոյնչափ ինձ ամենայն հաւանականութեամբ ԿԱՐԵԼԻ և մեծ դիւրութեամբ ԳՈՐԾԱԴՐԵԼԻ կ՚երևի. այլ թէ ի՛նչպէս, միտք դիք կ՚աղաչեմ, փոքր մի յետագայ բանից.

Աշխարհիս վերայ չը կայ այնպիսի զօրաւոր բան մի որպէս մարդոյս անձնական շահն ու օգուտն. ասոր համար որպիսի մարդ որ ըլլայ՝ ամեն բան կը զոհէ իւր անձնական շահուն համար, եւ և շատ անգամ նաև իւր կեանքն։ Սոյն այս շահու համար ազգ ազգի վերայ և թագաւորութիւն թագաւորութեան վերայ ելանեն։

Այս գրուցածս այնպիսի ճշմարտութիւն մի է, որ ապացուցութեան ամենևին կարօտութիւն չունի, ինքնին յայտնի առած մի է։ Իսկ շահ և օգուտ բոլոծնիս ալ առաւել վաճառականութենէ կը ծագի, վասն այսորիկ անպատճառ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ մի հաստատել պէտք է։ Այս Համազ-

գային վաճառականութեան կեդրոնատեղիքն հաստատեալ են ի Լօնտրա, ի Փարիզ, ի Վիեննա, ի Կ. Պօլիս, յԱղեքսանդրիա Եգիպտոսի, ի Թիֆլիս և ի Կալկաթա։

Իւրաքանչիւր կեդրոնատեղեաց Ազգային վաճառականք պարտին հաղորդել իրերաց զելս և զմուտս ամեն տեսակ վաճառաց, ընչից և բերոց երկրին իւրեանց, որ ըստ այնմ տնօրինեն վաճառականութիւնն իւրեանց։ Այս բանք իմ, սիրելիք, ոչ երազապատում բանք են, և ոչ իսկ ըստ առածին օդային աշտարակաշինութիւն, այլ ըստ ամենայնի հիմնական ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ միջոց մի. շատ է զի կարող Անձինք միանգամ սկիզբն արասցեն առաջարկած գործոյս ամենայն քաջութեամբ և հաւատարմութեամբ։ Այսու համազգային վաճառականութեամբ ընդհանուր ազգային միութիւնն ալ անշուշտ կը հաստատուի, որ է առաջին միջոց յառաջադիմութեան Ազգիս։ Այսու Համազգային վաճառականութեամբ բովանդակ տեղերաց վերայ ցրուեալ Ազգայինքն իրերաց հետ անքակտելի կերպիւ պիտի կապուին. վասն զի մէջ տեղ անձնական շահ և օգուտ կայ։

Կ. Պօլսեցիք չեն գիտեր՝ թէ ի Թիֆլիս ո՞րչափ Ազգայինք կան, քանի՞ վաճառականք, և ո՞րչափ արհեստաւորք։ Նմանապէս՝ Թիֆլիսցիք Կ. Պօլսոյ Ազգայնոց վերայ բնաւ կատարեալ ծանօթութիւն և տեղեկութիւն չունին։ Աստ նման չեմք գիտեր՝ թէ Հնդկաստանի Ազգային վաճառականք և սեղանաւորք ո՞յք են յանուանէ և որպիսի՞ք ոմանք են։ Եւ թէ ի Չին և ի Ճաբոն ո՞րչափ Ազգայինք կան և զի՞նչ գործ կը գործեն. թէ՝ ո՞րչափ Ազգային վաճառականք կան ի Լօնտրա, ի Փարիզ, ի Վիեննա, ի Զուիցերի և այլուր յԵւրոպիա. թէ ո՞րչափ Ազգայինք և քանի՞ վաճառականք յԵգիպտոս. թէ՝ յիւրաքանչիւր աշխարհէ որպիսի՞ բերք և

Ասիոյ անհատ բերքն ու գործուածներն, ափիոնն, ընդե-ղէն, ձուկն, բամբակն և բուրդն ո՞վ կը ժողովէ և ո՞վ յԵւրոպա կը յուղարկէ ։ Թէ ո՞վ է չորս՝ հինգ հարիւր հազար բեռ չյարդարուած կաշիները ժողովողը, վա-ճառողն ո՞վ, և յԵւրոպա տանողն ո՞վ ։ Թէ ո՞վ է Կ. Պոլսոյ հնոտին և կտորտանքն ժողովողն. կենդանեաց ոսկրներն և կաշիներն ծախու առնողն ո՞վ, և տանողն ո՞վ ։ Թէ ո՞վ է որ ասոնց փոխարէն յԱնգղիոյ գործա-րանաց ամեն տարի Ասիոյ Տաճկաստանին համար բիւ-րաւոր բեռ տարայնանկեալ պիտակ բամբակեղէն կը բերէ և որո՞ց ձեռօք կը ծախէ ։ Թէ ո՞րչափ բեռ գունաւոր բամբակեղէն Պասմա և Չիթ կու գայ. ո՞յք են տանողք և ո՞յք են առաջին վաճառողք և ի Պարս-կաստան տանողք ։ Թէ ի՞նչպէս Գաղղիայէն ամեն տեսակ մետաքսեղէն, բամբակեղէն, յախճապակեայ և ապակեղէն ձեռագործներ կու գան, որոց փոխարէն միլիոնաւոր ոսկի կը հատուցուին. ո՞վ այս ամեն վա-ճառքն կը յուղարկէ, և որո՞ց ձեռօք այն վաճառքն կը ծախուին ։ Թէ ո՞յք շարունակ շրջենաւուք և շոգեկա-ռօք հետզհետէ ի Զուիցերիէ և ի Վիեննայէ կը յուղար-կեն այլ և այլ վաճառս և փոխարէն կը ժողովեն ու կը տանին մեր միլիոնաւոր ոսկիները ։ Թէ ո՞վ կը յու-ղարկէ ի Ռուսիա մեր երկրին բերքերն, և անկէց եկածն ո՞վ կը վաճառէ ։ Թէ ո՞վ կը բերէ յԵգիպտոսէ եկած անհատ բերքերը, բամբակն, շաքարն և բրինձն, և ո՞վ կը վաճառէ ։

Ո՞ւր էր թէ Թուրքիոյ վաճառականութեան ճիշդ վիճակագրութիւն մի գտնուէր, և ըստ այնմ գիտնա-յինք մեր գործն կարգադրել ։ Ներկայ տարւոյս Կոթայի տարեցոյցն Թուրքիոյ վաճառաց ներածումն (importa-tion) 462 միլիոն ֆրանք, այսինքն 20 միլիոն լիրայէ աւելի կը հաշուէ, իսկ արտահանումն (exportation)

250 միլիոն ֆրանք, որ է իբր 11 միլիոն լիրա ։ Եթէ այսչափ միլիոնաւոր լիրայից տուրեւառութեան մասն մի միայն մեր Ազգային վաճառականաց ձեռօք պտոյտ առնոյր՝ շատ էր մեզ ։ Այդ տուրեւառին գործողքն մեզի նման մարդ են, բայց մեք անոնց նման գործող չեմք ։ Մինթէ այս ամեն վերի յիշած տեղերս մեր Ազգայինք չկա՞ն արդեօք. ընդէ՞ր անգործ կեցեր կը նային.

Այս ամեն ծանօթութիւնքն վերի յիշուած ազգային վիճակագրական լրագիրն միայն կարող է տալ ամեն վաճառականաց, յաւելլով իւրաքանչիւր ընչից և բերոց որքանութիւնն. ի՞նչ արժէք ունին, և ո՞ր գնով ծախուին, փաճառողն և գնողն, ուսկից գալը և ուր երթալն ։ Ինչո՞ւ համար Յոյնք Թուրքիոյ վաճառականութիւնն իրենց ձեռքն անցուցած են. վասն զի յեւրոպա բնակող Յունազգի վաճառականաց հետ շարունակ հաղորդակցութեան և յարաբերութեան մէջ են. և անոնց ձեռօք գործարանատեարց հետ ծանօթացան և գործքերնին կարգի դրին ։ Իսկ յԱնգղիա և ի Գաղղիա բնակող Ազգային վաճառականքն մեր քանի՞ քաղաքաց հետ յարաբերութիւն ունին ։ Եւ եթէ յարաբերութիւն ալ ունենալու ըլլան՝ իրենց անձնական օգուտն և շահն միայն չափէն աւելի դիտելով իրենց բաժանորդներն ու յաճախորդները մեծամեծ վնասուց մէջ կը թողուն և սնանկանալոյ վիճակի մէջ կը ձգեն ։ Ամօթ մեզի եթէ այս յլուցուածն ճշմարիտ է ։ Ի բազմաց այդ գանգատն լսած եմ. և շատ ալ պատմութիւններ լսած եմ. սակայն ոչ կ՚ուզեմ խորունկ քննել, և ո՛չ ալ զոք ամբաստանել. միայն գործոյն տգեղութենէն շարժեալ կը յիշատակեմ ի խրատ և ի զգուշութիւն ազգային. և կը դառնամ Համազգային Վաճառականութեան գործադրելոյն ուրիշ պարագայ մի կամ պայմանն ալ բացատրել ։

# ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՊԱՆՔԱ

Այս Համազգային Վաճառականութիւնն ծաղկելոյն, զարգանալոյն և յառաջանալոյն համար Համազգային Պանքայի մի կարօտութիւն կայ, վասն զի այն պիտի ըլլայ վաճառականութեան ընդհանուր Տնօրէնն, հոգին, կարգադրիչն և յառաջացնողն. որ և կեանք և կենդանութիւն պիտի տայ ողորմելի Ազգիս։ Ազգային վաճառականքն ի'նա յուսացեալ պիտի յուղարկեն իւրաքանչիւր կեդրոնատեղեաց պէտք եղած վաճառս։ Գործարանատեարք ի'նա վստահացեալ պիտի առաքեն իրենց ձեռագործ շինուածս։ Վերջապէս ամեն վաճառուաց և ձեռագործաց և բերոց տեղափոխութիւնքն այս Համազգային Պանքային ձեռօք պիտի սատարուի, որոյն վերայ է ընդհանուր պատասխանատուութիւնն։

Այսպիսի Պանքայի մի հաստատութիւնն ինչչափ որ վերջին ձգեցինք, բայց իս ամենէն առաջ պէտք էր խօսիլ անոր հարկաւորութեան և հաստատութեան վերայ. վասն զի՝ ինչպէս որ խօսեցանք, առանց Համազգային Պանքայի անհնար է և բնաւ կարող չէ Համազգային վաճառականութիւնն ոտից վերայ կենալ։ Այս գրուցածս շատ աղէկ կը հասկնան անոնք, որ վաճառականութեան մէջ զօր ամենայն կը թարթափին. և անոնք որ փոքր ինչ քաղաքականութեան և աշխարհիս ընթացից տեղեակ են։ Չեմ կամիր աստ երկարօրէն և մանրամասնաբար Պանքայիս ամեն օգտակար մասերն մի առ մի բացատրել. շատ համարիմ առ տեղեաւս անոր հաստատութեան և հիմնարկութեան պէտք եղած և հարկաւոր երևցած կարգադրութիւնս բացատրել։

Ա. — Նախ և առաջ ամեն Ազգային մեծ վաճառա-

կանք և Հորուստ Սեղանաւորք և Մեծատունք ընկե-
րանալով կանխիկ պիտի տան իւրաքանչիւր միոյ բաժնի
համար, կամ հինգ հարիւր, կամ հազիւր փսկի. ինչպէս
որ բաժնից չափն որոշուի։ Ըստ իս օգտակար է և
թէ որ ժամ մի յառաջ տասնական ոսկւոյ բաժանոր-
դութեամբ Ազգային Դանքայ մի հաստատուի. բաւա-
կան է որ ինչ եղանակաւ որ ըլլայ, անգամ մի սկսուի.
այս է իմ մի միայն փափաքս։ Որովհետև համոզեալ
եմ՝ թէ ողորմելի Ազգիս կենդանութիւն և փրկութիւնն
անկէց միայն պիտի ըլլայ։

Բ. — Բաժանորդաց թիւն պէտք է որ բաց ըլլայ.
և որչափ անձինք կը փափագին Ազգիս յառաջադիմու-
թեան, պիտի կարենան հաստատանել իրենց բաժինն
ըստ որոշման քանակութեան։

Գ. — Դանքայս մինչև ցհինգ տարի շահ մի պիտի
չհաստատանէ բաժանորդաց։ Իսկ եթէ այս խիստ երև-
ւի գոնէ տարեկան երեք առ հարիւր տոկոսիք պիտի
շատացուի։

Դ. — Դանքայս պարտի նախ Ազգային երկրագոր-
ծաց փոխ տալ ստորին վաշխով. և ո՛չ թէ որպէս առ-
նեն ոմանք յԱտանա և յայլ կողմանս, որք՝ ըստ պատ-
մելոյ ոմանց, 25 առ 100 տոկոսիւք սուակ կը բաժնեն
ողորմելի երկրագործաց, ապրուստ և սերմանելոյ
համար, այսու դաշամբ և՛ս որ վերջէն երկրին բերքը
ստորական գինէն հարիւրին տասն կամ քսան զեղչով
պիտի տան փոխատուաց իւրեանց ի հատուցումն. և
այսպէս ողորմելի գործաւորքն երբէք չեն կարող ազա-
տիլ պարտատերաց ձեռքէն. այլ յաւիտեան իբրև
գերի պիտի ծառայեն անոնց։

Ե. — Համազգային Վաճառականութեան կեդրո-
նատեղի քաղաքաց մէջ Դանքայն գլխաւոր գործակալս
պիտի հաստատէ. իւրաքանչիւր սահմանին մէջ ճիւղեր

պիտի հիմնէ, որով վաճառականաց դիւրութիւն տրուի չափաւոր վաշխով դրամ գտնելոյ և իրենց գործքն յաջողցնելոյ ։

Քանի մի տարի առաջ առիթ ունեցայ անձամբ տեսնել Օսմանեան Պանքային ի Պէրութ հաստատուած ճիւղը, որ տարածեր էր զիւր ազդեցութիւնն Ասորեստանի և Պաղեստինոյ վերայ, և ամեն ազգաց սեղանաւորք և վաճառականք իրեն հրամանաց կ՚անսային և որոշեալ ժամու յօժարութեամբ կը հատուցանէին իրենց պարտքը վաղապէն փոխ առեալ գումար և տոկան ։ Աւա՜ղ և եղո՜կ մեզ, որ ի սփիւռս աշխարհաց ունիմք բազմութիւն վաճառականաց, այլ Ազգային Պանքայ մի դեռ չունիմք ։ Վասն այսորիկ օտար ազգաց դուռի բախելով ողորմելի եմք, և հանապազ աղքատութեամբ կը հալիմք ու կը մաշիմք ։

Զ. — Համազգային Պանքային պարտքն է բաւական դրամագլխոց տէր միջին աստիճանի վաճառականս ի մի ժողովել, և այլ և այլ վաճառաց տեսակին համեմատ վաճառականաց մէջ զանազան ընկերութիւնս հաստատել, և անոնց դրամագլխոց համեմատութեամբ իւր կողմէն ալ դրամագլուխ յաւելուլ նուազ տոկոսեօք և բանաւոր պայմանօք ; և կամ բաժանորդական ընկերութեամբ . և հսկեսցէ միշտ անոնց վերայ, որպէս զի իւրաքանչիւր ընկերութիւն ծաղկի և զարգանայ օր քան օրէ ։

Է. — Համազգային Պանքայն ընդհանուր վերատեսուչներ, գործակատարներ, հսկող ժողովներ և զանազան պաշտօնականներ պիտի ունենայ ։ Այլ թէ ո՞րչափ, քանի՞ անձինքներէ բաղկացեալ և ուստի՞ ընտրեալք են ; Ասոնց վերայ չեմ ուզեր պարապ ժամանակ անցունել . վասն զի այսպիսի պանքայից հաստատութիւնք յԵւրոպա շատ են . և կանոնադրութիւնքն ար-

դէն իսկ հրատարակած են ։ Համազգային Պանքային կը պատկանի անոնցմէ քաղուած մի առնելով դիւրութեամբ և հաւանութեամբ բաժանորդաց իսկոյն ի գործ դնել ։

Բուն իսկ գործն և արխութիւնն միանգամ ակսիլ և հաստատելն է. վասն այսորիկ խրաքանչիւր ոք, որ ՀԱՑ անունը կը կրէ, և սակաւ մի ազգասիրութիւն սրտին մէջ վառ մնացեր է, պէտք է որ ոխրով և յօժարութեամբ այս որբազան նուէրն ընծայէ վասն ոխրոյն և վասն փրկութեան ողորմելի և տառապեալ Ազգին իւրոյ։ Թէ որ մարդ մի փոքր ինչ խելք ունենայ, կարող է ինքիրեն մտածել և հետևեցուցանել՝ թէ այս ընծայած գումարն իրեն և իւր ընտանեաց համար հաստատուն դրամագլուխ մի է. և պիտի գայ օր մի, որ այն տուած գումարէն մեծ օգուտ պիտի քաղէ թէ ինքն և թէ իւր Ազգն ։

Հոս կը վերջացնեմ խօսքս. վասն զի եթէ ամեն բան գրուցել և ամեն բան բացատրել ուզեմ՝ մանրամասն տեղեկութեանց վերջն չգար ։ Իմ նպատակս այն էր՝ որպէս Ցառաջարանին մէջ ծանուցի, որ ցուցանեմ Մայրաքաղաքիս Հայազգի բնակչաց թէ իրենց աղքատանալոյն պատճառն ինքեանք են, և թէ հարստանալոյն պատճառն ալ դարձեալ ինքեանք պիտի ըլլան. դանձերն լեցուն են. բաւական է որ ուզեն անոնցմէ իրենց մաս մի առնուլ ։

Երբոր մեր ամեն զանազան պիտոյքն հետզհետէ կը շարէի, և երբ յառաջադիմութեան ԿԱՐԵԼԻ և ԳՈՐԾԱԴՐԵԼԻ Միջոցս կը բացատրէի, միշտ ըստ հարկին կըրկնեցի՝ թէ Եկեղեցականաց, Իշխանաց և Ժողովոց պարտքն որո՞նք են. հոս վերստին անոնց յորդոր մի

*կարդալ բոլորովին աւելորդ կը սեպեմ. բաւական համարելով կրկնել որ եթէ Ազգին մէջ յոյս մի կայ, որ գործունէութեան ոգին զարթնու և մեր նոր երիտասարդութիւնն իւր ճշմարիտ շահն ճանաչելով ամեն կերպ արհեստից ձեռք զարնէ. այս ալ միայն նոյն պաշտօնատարաց փութոյն ու ջանիւքն պիտի կատարի։*

*Քաղաքակիցք իմ և Ազգակիցք Հայաստանի բնակիչք Կ. Պօլսոյ, ալ Ձե՛զ կը յանձնեմ դատել, եթէ իրաւունք չունէի՞ արդեօք երբ կ'ըսէի թէ ձեր հարստանալուն և հանդիստ ապրելուն համար բաւական է միայն քիչ մի փոյթ, սակաւ մի ջանք և փոքր մի աշխատանք։ Ահա՛ գործք որ մեծամեծ օգուտ և շահ կը պտղաբերեն. բայց մեք նոյն գործոց կատարիչն չեմք. մեր այժմեան վիճակին նայելով՝ ցաւով սրտիս պարտաւորեալ եմ ասել, թէ Ազգիս համար* ԳՈՐԾ ԿԱՅ, ԳՈՐԾՈՂ ՉԿԱՅ։

*Երանի՜ թէ ասկէ քանի մի տարիէ վերջ ուրիշ անձ մի ելլէ և աւետէ թէ Ազգիս մէջ այժ* ԳՈՐԾ ԿԱՅ, ԳՈՐԾՈՂ ԱԼ ԿԱՅ։

# ՅԱՆԿ ՆԻՒԹՈՅ

Եր